## Ճամբարում

Ճամբարում բոլորը
Ուրախ են ապրում:
Առողջներ կանգնած
Դրոշ բարձրացնում:





Ուրախ երգերով
Անտառ են գնում,
Ծառ ու ծաղիկներից
Բուրմունք են առնում:

digitised by A.R.A.R.@

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## №: 6 ● 1984





# Խաղաղությունը...

Դաշտերին՝ կանաչ,
Ծովերին՝ ճաճանչ,
Գետերին՝ կարկաչ,
Սարերին կանչ
Ո՞վ է պարգևում:
— Խաղաղությունը...

Հանդ ու արտին՝ բերք,
Թռչուններին՝ երգ,
Այգիներին՝ միրգ,
Մանուկներին՝ գիրք
Ո՞վ է նվիրում:
— Խաղաղությունը...

Գիշերներին՝ լույս,
Կարոտյալին՝ հույս,
Մարտնչողին հույզ
Ո՞վ է ավետում:
— Խաղաղությունը...

Շատ անգամ խաբված,
Դարերով անցած,
Մեզ ապավինած
Խաղաղությունը
Ո՞վ է պաշտպանում:
— Բարությամբ զինված
Եվ կամքով արի՝
Բյուր որդիները
Ամբողջ աշխարհի:


ԵՎԱ ՀԱԿՈԲՅԱՆ
Եղեգնաձորի շրջանի
Քարագլուխ գյուղի միջն. դպրոցի
7-րդ դասարան




digitised by A.R.A.R.@





# ՓՈՂՈՑԻՑ ԳՏԱԾ ՇՆԻԿԸ

Մի անգամ իմ և Կարինեի ետևից մի շնիկ ընկավ, քայլում էր մեր ոտնահետքերով: Ուր գնում էինք, գալիս էր:

— Արի տանենք մեր տո՛ւն,— ասաց Կարինեն:

Շնիկը կարծես հասկացավ: Երբ Կարինեն կանգնում էր, շնիկը սկսում էր լիզել նրա ոտքերը:

— Տես, ի՜նչ լավն է: Տանե՜նք:

— Եթե ուզում ես, տանենք:

— Լավ շնիկ է, ես կպահեմ, հաց ու ջուր կտամ:

Վերջապես տուն հասանք: Կարինեն շնիկին գրկած ներս մտավ: Իսկույն կերակրեց: Բայց շնիկը թափթփեց ամբողջ ուտելիքը հատակին: Կարինեն ստիպված ավելը բերեց ու մաքրեց: Քիչ անց շնիկը թրջեց հատակը: Կարինեն շփոթված ինձ նայեց: Սա դեռ սկիզբն է, մտածեցի, դեռ ուրիշ բաներ էլ է անելու: Մինչև երեկո շնիկը չափն անցկացրեց: Կարինեն տըխրեց, բաց արեց դուռն ու ասաց.

— Գնա՛, քեզ նման շնիկ չեմ ուզում...

ՎԱՐԴՈՒՀԻ ՍՄԲԱՏՅԱՆ
Երևան, № 56 դպրոց, 6-րդ դասարան

ՍԱՀԱԿ ՀՈՎՍԵՓՅԱՆ, 10 տ.
ՎՍՍՀ Բոգդանովկայի շրջան, գ. Հեշտիա



«Հեքիաթ»
ԱՆՈՒՇ ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ
Սիսիանի № 2 միջն. դպրոց, 5-րդ դաս.



13288

digitised by A.R.A.R.@




Տարիներ անց նորից ծանոթ երկաթուղային փոքրիկ կայարանում եմ։ Ամառային պայծառ առավոտ էր, ինչպես տարիներ առաջ, երբ մեր զորամասը գրոհով ազատագրեց այս կայարանը։

Եկել եմ ու կանգնել կայարանամերձ անտառի եզրով հոսող գետակի ափին բարձրացած հուշարձանի առաջ, որի տակ հանգչում են երկու խիզախ պիոներներ։ Ես մտովի վերապրում եմ 1943 թվականի օգոստոսը։

... Մոտենում էր լուսաբացը։ Ռազմաճակատում լռություն էր։ Խրամատների դիմաց արդեն գծագրվում էր Գուգի երկաթուղային կայարանը, որ համառորեն իր ձեռքում էր պահում թշնամին։

Միանգամից որոտացին մեր հրետանու սարսափազդու համազարկերը, պատառոտվեց, բզիկ-բզիկ եղավ լուսադեմի խավարը, և բացվեց փոշեխառն առավոտը։

Երբ վերջին անգամ որոտաց մեր հրետանին, լսվեց մեր երիտասարդ հրամանատարի ձայնը.

— Հանուն հայրենիքի, առա՜ջ։

Զորամասը միանգամից դուրս հորդեց խրամատներից ու նետվեց գրոհի։ Ռռնացին գերմանական արկերն ու ականները, դեպի մեզ սուրացին հազարավոր գնդակներ։

Զորամասը գամվեց գետնին։

Անսպասելիորեն հակագրոհի անցան գերմանացիները։ Սկսվեց մի արյունալի գոտեմարտ։

— Դրո՛շը, կարմիր դրո՜շը, տղե՛րք,— թոհուբոհի մեջ որոտաց մեր զինվորներից մեկի ձայնը։

Երկաթուղային կայարանի տներից մեկի տանիքին փողփողում էր կարմիր դրոշը։

Զորամասը պոկվեց տեղից և ինչպես լեռներից գահավիժող հեղեղ հորդեց առաջ։ Այլևս ոչ մի ուժ չէր կարող կասեցնել մեր գրոհը։

Իրենց թիկունքում նկատելով փողփողացող կարմիր դրոշը՝ գերմանացիները խուճապի մատնվեցին։ Խառնիխուռն նահանջելով՝ նրանցից ոմանք կրակն ուղղեցին փողփողացող դրոշի վրա։

Ամենից առաջ մեր գումարտակը մտավ կայարան։

Մենք մի քանի մարտիկներով վազեցինք դեպի այն տունը, որի տանիքին եփնացել էր դրոշը։ Բարձրանալով տանիք՝ մի պահ քարացանք։ Մեր առջև, գնդակոծումից ջարդոտված տանիքի վրա ընկած էին երկու արնաշաղախ պատանիներ։ Նրանցից մեկը փամփուշտներով խոցոտված արնաներկ կրծքին սեղմել էր պիոներական փողկապներից կարած դրոշակի ձողը։

Հրացանային ու հրետանային համազարկերի տակ հողին հանձնեցինք խիզախ պիոներներին ու երդվեցինք վրեժ լուծել նրանց համար, բոլոր զոհվածների համար։

**ՄԱՆԱՍ ՆԱԶԱՐՅԱՆ**

Երևանի № 59 դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ, Հայրենական մեծ պատերազմի վետերան



digitised by A.R.A.R.@



ԶՈՐԻ ԲԱԼԱՅԱՆ

# Պապս է թռչում ամեն օր

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Իմ հայրենի Ստեփանակերտը պատերազմի ժամանակ բոլորովին փոքրիկ մի քաղաք էր: Երբ պատերազմը սկսվեց, ես էլ դեռ մանկապարտեզ էի գնում: Մենք՝ անչափահասներս այնքան էլ չէինք հասկանում, թե ինչ ասել է պատերազմ: Նույնիսկ լուսաքողարկման մասին իմացանք հետո: Որովհետև այն ժամանակ, երբ մեծահասակները վարագուրում էին լուսամուտները, երեխաներն արդեն քնած էին լինում: Սակայն, ինձ թվում է, մենք շատ շուտ հասկացանք, թե ինչ ժամանակներում ենք ապրում: Պատերազմը այն էր, որ երեխաների ետևից միայն կանայք էին մանկապարտեզ գնում:

Մեր տնից երեք տղամարդ մեկնեցին ռազմաճակատ: Եվ մնացինք միայն մենք պապիս հետ: Ես յոթ տարեկան էլ չկայի: Նա յոթանասունյոթ էր: Առավոտները ես նրան երբեք չէի տեսնում: Ամեն անգամ, երբ արթնանում էի, պապս արդեն տանը չէր լինում:

Ես այդպես էլ մինչև վերջ չհասկացա, թե ի՞նչ էր նա՝ իմ բարի խնամատարը: Նրա պատմածներից միայն գիտեի, որ իր ծնողները, այսինքն իմ նախապապերը, եղել են հողագործներ: Եվ ինքը՝ պապս էլ, հողագործ էր: Նա վարում էր, ցանում, բերքը հավաքում: Բայց ես տեսնում էի նաև , թե նա ինչպես է աթոռակներ շինում, ինչպես է մանգաղ նորոգում, աղբյուր-հուշարձան կառուցում: Այն տարին, երբ մեր տան բոլոր երեք տղամարդիկ էլ ռազմաճակատ մեկնեցին, ես մի ակնթարթում ինձ հասունացած զգացի: Աշնանը միայն պետք է դպր գնայի, բայց արդեն գարնանը պապս ասաց, որ միասին պետք է գնանք վար անելու, կարտոֆիլ ցանելու: Քաղաքից դուրս մենք մեր բանջարանոցն ունեինք:

Ես շատ ուրախացա: Բոլորովին մտքովս չէր անցնում, թե պապս ստիպված

digitised by A.R.A.R.@

է ինձ իր հետ տանում, որովհետև չկար ուրիշ մեկը, որի հետ գնա: Ես համոզված էի, որ վրա է հասել «հասունությունը»: Նախորդ երեկոյան ես, սովորականի պես, մի ամբողջ տետր նկարեցի: Շատ աշխատեցի պապիս նկարել: Նկարածս իրեն ցույց տվեցի: Պապս, ձեռքը հեռու երկարած, ոչ մի կերպ չէր կարողանում տեսնել նկարը: Եվ շարունակ գանգատվում էր, որ ակնոցը ջարդվել է ու հիմա, մինչև նորն ունենալը, կույրի պես պիտի մնա: Այն ժամանակ դեռ չըգիտեի, որ նա հեռատես է և կարող է տեսնել հեռու-հեռուն: Ես կարծում էի, որ եթե նա պարզած ձեռքի հեռավորության վրա չի տեսնում, ապա քիչ ավելի հեռվում ոչ մի բան չի նշմարի: Ես այդ հիշեցի, երբ կարտոֆիլ էինք ցանում:

Ոչ այնքան խոր ակոսի մեջ պապս փոքրիկ փոս էր փորում, ես մեջը չորսհինգ փոքրիկ սերմացու կարտոֆիլ էի գցում: Հետո նա այդ մի թուռ կարտոֆիլ ծածկում էր հողով և անմիջապես բահը կողքի ակոսի մեջ խրում: Եվ այդպես մեկ ժամ, երկու, երեք: Ես շարունակ կարտոֆիլի պարկով սողում էի պապիս ետևից: Քայլում էի կռացած: Մեջքս տնքում էր: Հատկապես անտանելի էր, երբ ուղղում էի մեջքս: Ուշքս ու միտքս մի բանի վրա էր, մի ցանկություն ունեի՝ որքան հնարավոր է շուտ վերջանար պարկի միջի մանր սերմացու կարտոֆիլը: Թե չէ մեջքս կկոտրվեր: Պապիս չէի կարող գանգատվել: Հարկավոր էր դիմանալ, դեռ չէր պատահել, որ ես գանգատվեի պապիս: Եվ որոշեցի խորամանկել: Մտածեցի՝ իսկ ինչո՞ւ եմ փոսի մեջ չորս հատ սերմացու կարտոֆիլ գցում: Ինչո՞ւ ոչ տասը: Չէ՞ որ պապս, հաստատ համոզված էի, տեսնում է միայն պարզած ձեռքի հեռավորության չափով: Այդպես էլ արեցի: Նա ոչինչ չասաց: Միայն մի ակնթարթ սև հողով լի բահը օդում անշարժացավ: Հետո հանգիստ փոսը ծածկվեց հողով: Նույնը արեցի երկրորդ անգամ: Կռանալով մանր կարտոֆիլով լցված փոսի վրա, ես ըսպասում էի, թե պապիս բահը երբ կկատարի սովորական շարժումը օդում: Սակայն բահն անշարժ էր: Ես սպասում էի: Սպասում էր և պապս: Նա լռում էր: Ես էլ էի լռում: Ուզում էի գլուխս բարձրացնել, նայել նրան և հայացքով հարցնել, թե ի՞նչ է պատահել: Բայց զգում էի, որ, նախ, չեմ կարողանա նրա աչքերին նայել, և հետո՝ մեջքս կցավի, եթե ուղղվեմ: Եվ մի փոքր էլ սպասելով, ես սկսեցի կարտոֆիլ կարտոֆիլի ետևից փոսից հանել: Պապս սպասում էր դրան: Եվ բահը շարժվեց միայն այն ժամանակ, երբ փոսում մնաց ընդամենը հինգ կարտոֆիլ:

Պապս ո՛չ այդ օրը, ո՛չ էլ հետո ինձ ոչինչ չասաց: Հավանաբար նա հասկանում էր իմ վիճակը: Ես մտածեցի, թե նա մոռացած կլինի այդ դեպքը ընդհանրապես: Սակայն, ահա, ամռան վերջին, երբ արդեն սկսել էինք կարտոֆիլը հավաքել, պապս ինձ բերեց հենց այն փոսի մոտ, ուր ես մեծ քանակությամբ սերմացու էի լցրել: Կողքի փոսից նա ցուցադրաբար փորեց հանեց հսկայական քանակությամբ կարմրավուն խոշոր կարտոֆիլներ: Իսկ հետո խնդրեց, որ ես փորեմ այն՝ «իմ» փոսը: Ես բահը խրեցի փխրուն հողի մեջ: Փորփրեցի այն: Դուրս էր գալիս միայն մանրուք: Նոր կարտոֆիլի հետ մեկտեղ դուրս եկան նաև կիսափտած սերմացուները: Ես ոչինչ չասացի պապիս: Ես ամեն ինչ հասկացել էի: Ու ամբողջ կյանքում հիշեցի նրա մի բառը, որ այսուհետև երբեք չեմ մոռանա: Այդ բառը «ինքնախաբեությունն» էր: Այն ժամանակ ես հասկացա, որ ինքնախաբեությունից ավելի սարսափելի բան չկա: Որ խաբելը, իհարկե, վատ է: Բայց ինքն իրեն խաբելը ավելի վատ է: Քանի որ ինքն իրեն խաբող մարդը կխաբի նաև հողին: Իսկ հողին, ինչպես պապս էր ասում, անհնար է խաբել անպատիժ: Եվ ես մտածեցի. իսկ ի՞նչ կլիներ, եթե մեր բանջարանոցի ողջ կարտոֆիլը այդ տարի դուրս գար այնպիսին, ինչպես դուրս եկավ «իմ փոսից»: Այդ տարիներին մենք միայն կարտոֆիլով էինք կերակրվում:

Պապիս երեք որդիներն էլ չվերադարձան ռազմաճակատից: Նա վշտից լրիվ կռացավ: Տատս էլ լալով փչացրեց աչքերը, որոնք առանց այն էլ արդեն խամրած էին:

Մեր փոքրիկ քաղաքում, կարելի է ասել, չկար մի տուն, ուր վիշտը թափանցած չլիներ: Մենք՝ երեխաներս, արդեն գիտեինք, թե որ օրը ում տունն էր մահվան թուղթ եկել: Աշխատում էինք այդ-



digitised by A.R.A.R.@

պիսի տան մոտ այլևս չխաղալ, չաղմկել: Ես սովորականի նման շարունակում էի պապիս օգնել տնտեսության մեջ: Փայտի էինք գնում անտառ, կարտոֆիլ էինք ցանում, լոբին ջրում: Ինձ համար պապս երկրորդ դպրոց էր: Դա գուցե «ամենալուռ» դպրոցն էր աշխարհում: Նա ինձ լռությամբ էր ամեն ինչ սովորեցնում: Հաղթանակի օրը նա ինձնից տետր խնդրեց : Այդ ժամանակ արդեն ակնոց ուներ: Ես նրան աշակերտական մի տետր տվեցի, որի կազմի վրա գրված էր՝ «Մատիտով գրելու համար»: Պատերազմի ժամանակ մենք տետրի մեջ հազվադեպ էինք թանաքով գրում: Թերթերը կարծես ծծան լինեին, դրա համար էլ մատիտով էինք գրում: Պապս շատ երկար ինչ-որ բան էր գծագրում: Ես նայում էի և քիչ բան էի հասկանում այդ գծերից: Պարզվեց, որ նա ուզում էր աղբյուր-հուշարձան կառուցել: Արդեն այն ժամանակ ես գիտեի, որ աղբյուր-հուշարձաններ են կառուցում զոհված մարտիկների հիշատակին: Եվ ահա, Ղարաբաղի Հաղորդի գյուղը տանող լեռնային ճանապարհի վրա պապս ծրագրեց աղբյուր-հուշարձան կառուցել: Քիչ հեռու բնական աղբյուր կար, նա ջուրը բերեց հուշարձանի մոտ և իր երեք զոհված որդիներին նվիրված հուշարձան-աղբյուր կանգնեցրեց: Ես նրան օգնում էի առավոտից մինչ երեկո: Մի օր բերնիցս դուրս թռավ. «Պա՛պ, նույնիսկ դպրոցում մի հանգստյան օր կա: Բոլոր մարդիկ հանգստյան օր ունեն: Իսկ դու յոթ օրն էլ աշխատում ես»: Նա ոչինչ չպատասխանեց: Եվ կարծես հեռացավ խոսակցության նյութից: Ես մտածեցի, թե վիրավորել եմ նրան իմ անզգույշ խոսքով: Երբ ճաշի ժամը եկավ, և աղբյուրի մոտ տեղավորվելով, կարկատած տոպրակից պիտի հանեինք տատիս դրած ուտելիքը, պապս հայտարարեց, որ այսօր մենք չենք ճաշելու: Ես ոչինչ չըհասկացա: Լռեցի: Բայց շատ էի սոված և այնուամենայնիվ մինչև վերջ չհամբերեցի և հարցրի, թե այսօր ինչո՞ւ չենք ճաշելու: Պապս միանգամայն հանգիստ հասաց, որ հացթուխներն այսօր հանգստյան օր են վերցրել և հաց չեն թըխել: Իհարկե, այդ օրը մենք պապիս հետ, ինչպես միշտ, հացի նստեցինք և կերանք: Բայց այդ օրը ես հասկացա ուրիշ բան. հացը պետք է ամեն օր թըխել: Առանց հանգստյան օրվա:

## ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ

Այդ պատահեց ութերորդ դասարանում: Դասարանական ժողովից անմիջապես հետո, դասղեկը տղաներին կատարած անկարգության համար պահեց դասարանում, իսկ մեզ՝ աղջիկներիս պատվիրեց սպասել դրսում: Դպրոցում ուրիշ աշակերտներ չկային: Դե, երևի ճիշտ է, որ ասում են, աղջիկները կովարար են ու անհանգիստ: Սկսեցինք գոռգոռալ, միջանցքի մի ծայրից մյուսը վազել, իրար հրմշտել: Մի քանիսն էլ հավաքվել էին աստիճանների գլխին՝ միջանցքը եզրափակող դռների ետևում: Նրանք գոռում էին ու բարձրաձայն ծիծաղում: Երբ նրանց մոտեցա, նրանցից մեկին այնպես հրեցին, որ նա թափով բախվեց ինձ ու իր հերթին էլ՝ ոտքով այնպես խփեց, որ ցավից գալարվելով մի կերպ անցա ապակեպատ դռան մյուս կողմն ու դուրր ինձ քաշեցի: Ամեն ինչ այնքան անսպասելի եղավ, որ չհասկացա կատարվածը: Միայն լսեցի փշրվող ապակու և ներքևից եկող դիրեկտորի անհանգստացած ու բարկացած ձայնը: Հաջորդ րոպեին, երբ գլուխս բարձրացրի, միջանցքում ոչ ոք չկար: Ես լուռ վերցրի ավելն ու սկսեցի հավաքել ապակու փշրանքները: Աստիճաններով բարձրացող դիրեկտորի այն հարցին, թե ով կոտրեց ապակին, ոչինչ չկարողացա պատասխանել: Նա քայլեց դեպի դասարան և երբ արդեն դռների մոտ էր, լսվեց մեր դասարանի «պատիկի»



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

ձայնը, նա դասղեկին հայտնում էր, որ ես եմ կոտրել ապակին:

— Իսկ ասում էիր, թե չգիտես ով է կոտրել,— ինձ դարձավ դիրեկտորը:

Ձայն չհանեցի: Մտանք դասարան: Այնտեղ անմիջապես լռություն տիրեց:

Դիրեկտորը կարգադրեց վերցնել իմ և ուրիշ մի երկուսի պայուսակները, կանչել մեր ծնողներին, և մինչև ապակին չգցենք, պայուսակները մեզ չհանձնվեն:

Նրա գնալուց հետո բոլորն սկսեցին աղմկելով մատնացույց անել իսկական մեղավորներին: Ես հանձնեցի պայուսակս և լուռ դուրս ելա: Դուրս եկան նաև մյուս պատժվածները:

Առանց պայուսակի ինչպե՞ս տուն գնայինք, ի՞նչ անեինք: Դպրոցի մոտ մենք այնքան մնացինք, մինչև դռները փակվեցին, նոր ցրվեցինք: Ես երեկոյան մի կերպ տանը հայտնեցի կատարվածի մասին: Մայրս խիստ բարկացավ ու նախատեց ինձ: Ես լաց եղա: Այնուհետև եղբորս խնդրեցի, մյուս օրը եկավ, ապակին գցեց:

Դասամիջոցին արդեն ապակին գցված էր: Ես անհարմար էի զգում պատահածի համար և դասամիջոցներին դասարանում չէի մնում: Իսկ խփորը այդպես էլ մնաց անպատիժ, գոհ ու երջանիկ: Դասերից հետո դիրեկտորը մեզ հանձնեց պայուսակները և հայտնեց, որ եթե երկրորդ անգամ նման բան կրկնվի, մեզ կհեռացնեն դպրոցից: Ես պատահածի համար ստիպված եղա ներողություն խնդրել: Իսկ իսկական մեղավորները հանգիստ խղճով մեղքը գցեցին ինձ վրա:

Այդ օրից անցել է երկու տարի: Փոխվել են դասընկերներս: Ես նույնպես: Մի տեսակ լրջացել ենք, մեծացել: Հարգում ենք իրար, սիրում: Նույնիսկ ամենավատ ու անկարգ տղաները ուղղվել են և կյանքին սկսել են ավելի սթափ հայացքով նայել:

Շուտով հրաժեշտ կտանք դպրոցին, ամեն մեկս տանելով մեզ հետ նման շատ եղելությունների հիշողություններ, արդեն հասկացած, որ այդպիսի դեպքերի մեջ էլ փորձվում էր մեր ընկերասիրությունը և մեր բնավորության լավ կամ վատ կողմերը դառնում տեսանելի:

ՎԱՐՍԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

**Թումանյանի շրջանի Ճոճկան գյուղի 10-րդ դասարանի աշակերտուհի**



ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ



# ՍԵՎԱՆԻ ԱՓԻՆ

Նստած ստվերոտ մի ժայռակողի,
Հայացքդ թաղած ջրի հայելում,
Զուլված ջրի հետ վետվետող շողին`
Մի այլ գոյության շունչ ես վայելում:

Լքել ես ասես բանտը մարմնեղեն,
Թիթեռ ես թեթև, նուրբ ու ճախրունակ,
Թռչում ես, սահում, անցնում տեղից տեղ`
Խառնելով դեպքեր, բախտ ու ժամանակ:

Իսկ այն, ինչ, ավա՜ղ, քո շուրջն է հիմա,
Ծովի փրփրաշուրթ ծփանքն է հանել.
Շարժումն է կյանքի տարերքը անմահ,
Կարող է անվերջ բերել ու տանել,
բերել ու տանել...

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ

# Ասլանը

Ասլանը մի ամսական քոթոթ էր, որ բերեցինք հորեղբորս տանից: Շան քոթոթները մի քանիսն էին, Ասլանին ընտրեցինք: Գուցե այն պատճառով, որ առաջ նա մոտեցավ և պոչը շարժելով ըսկըսեց աչխույժ մեզ նայել: Գուցե և մեզ գրավեց նրա ամբողջովին սև գույնը: Իսկ մեզ շուն շատ էր պետք: Ոչ թե տունը պահպանելու, այլ հենց շուն ունենալու համար, որովհետև չէինք կարողանում մոռանալ մեր Կաշտանկային, որին կրճատ՝ Կաշտան էինք ասում:

Այն օրը, երբ դպրոցից վերադարձա, տանը բոլորը տխուր էին: Վատ բան նախազգացի, մանավանդ որ ամեն օրվա նման Կաշտանն ինձ չդիմավորեց բակի դռան մոտ:



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

— Ու՞ր է Կաշտանը,— պահանջեցի ես:

Մայրս լացակումած՝ գլուխս էր շոյում:

Ոչինչ դեռ չիմացած, ես սկսեցի լալ: Թե ինչ էր եղել՝ ինձ չէին ասում:

Ես փողոց վազեցի: Հավաքվեցին հարևան տղաները: Ու կարծելով արդեն գիտեմ, պատմեցին:

— Էլ փրկել չէր լինի, ոտքերն էլ կո-



digitised by A.R.A.R.@

տըրված էին,— ասաց մեկը:

Այդ տարիներին մեր Արաբկիրում շատերն էին շուն պահում: Բայց պահում էին կարգ ու կանոնով՝ բակերում, բների մեջ: Կային նաև անտեր շներ, դրանք շատ չէին: Ու դրանց բռնում էին: Ավտոմեքենաներ կային՝ թափքում վանդակ: Երբ այդ մեքենան երևում էր փողոցում, բոլոր երեխաները վազում էին տուն, պինդ կապում շներին ու ամուր փակում բակի դռները:

Մեզանից ամեն մեկը սրա վերաբերյալ իր բացատրությունն ուներ, բայց ամենից շատ համոզված էինք, թե շների կաշվից պայուսակներ են պատրաստում: Շներին բռնող մարդուն մենք ատելությամբ էինք նայում: Մանավանդ ձեռքի մեծ ունելիին, որով բռնում էր շան կոկորդից, քարշ տալիս մեքենան ու գցում վանդակը:

Ահա Կաշտանն էլ, երբ այս մեքենան երևացել էր փողոցում, կանգնած էր եղել բակի դռան մոտ և բնազդով ներս էր փախել ու մտել էր բույնը: Շուն բռնողը հասել էր, դուրս քաշել բնից և խեղճ կենդանուն գցել վանդակը՝ իր բախտակիցների մոտ: Մինչև մերոնք իմացել էին, արդեն ուշ էր եղել: Մարդը ոչ մի կերպ չէր վերադարձրել շանը, սպառնալով, թե գրանցված չէ, ցեղական չէ և ինքն իրավունք ունի տանելու:

Եվ ես հավիտյան ատեցի այդ շուն բռնողին, որին մինչ այդ էլ չէի սիրում, և բոլոր նրանց, ովքեր ուրիշ գործ չունեն, նստած ցեղական շներին են գրանցում: Եվ իրենք էլ չգիտեն՝ ի՞նչ աւել է ցեղական և կամ գրանցելուց ի՞նչ օգուտ:

Օրեր շարունակ տխուր նայում էի մեր Կաշտանի դատարկ բնին և չէի հաշտվում կատարվածի հետ: Եվ մերոնք որոշեցին մի ուրիշ շուն ճարել: Ահա այդ ժամանակ էր, որ հորեղբորս տնից բերեցինք քոթոթին ու անունը Ասլան դրեցինք: Լավ քոթոթ էր. ողջ օրը վազվզում էր մեր եռնից: Եվ արագ էլ մեծացավ: Ու մի օր էլ հայրս որոշեց.

— Պետք է կապել:

Ես համամիտ էի: Լավ էի հիշում Կաշտանի տխուր ճակատագիրը: Եվ նրա բընի մոտ, թթի մեծ ծառից ոչ հեռու, կապեցինք Ասլանին: Առաջին օրերին շատ էր անտվ՛որ, բայց հետո սովորեց: Այլ կերպ էլ չէինք կարող վարվել: Արդեն մեծ շուն էր դարձել և չէր վախենում կռվել իրենից մեծ շների հետ: Բացի այդ, կարող էր մարդկանց վնասել:

Լինում էին դեպքեր, երբ Ասլանն իրեն ազատություն էր տալիս ու հետո գալիս ու մեղավոր կանգնում: Հաճախ կռվի հետքերը երևում էին. կաղում էր, ականջները կծոտված էին լինում, բայց իր համար դա կարևոր չէր, գալիս, կանգնում էր կողքիս հպարտ, աչքերում ուրախություն՝ հակառակորդին հաղթել էր:

Կամաց-կամաց մեր Ասլանի համբավը տարածվեց և հարևան փողոցներում: Մարդիկ ավելի զգույշ էին անցնում մեր տան մոտով, թեև շունը միշտ կապած էր:

Մի ձմռան օր էլ, երբ մայրս պատուհանից փողոց էր նայում, տագնապած կանչեց.

— Հասիր, Ասլանն արձակվել է:

Ես դուրս թռա փողոց: Դիմացի տան բակի դռան մեջ կանգնել էին հարևանները ու չէին համարձակվում մոտենալ: Նրանց ցեղական հսկա շունը, որը երկու անգամ խոշոր էր Ասլանից, հաղթական և ինձ թվաց արհամարհանքով նայում է իր դիմաց կանգնած Ասլանին: Ես Ասլանի փոխարեն վիրավորվեցի, բայց և չէի համարձակվում մոտենալ: Այդ ցեղական շան մասին առասպելներ էին պատմում տերերը: Եվ բացի այդ, ոչ մի շուն բռնող չէր համարձակվում մոտենալ նրան: Դրա համար էլ չէի սիրում: Նրան չէին կապում, բացատրում էին, թե եթե կապեն, նա կհավասարվի մեր խեղճ ու կրակ ոչ ցեղական շներին:

— Շուտ ձեր շանը փրկի՛ր,— կանչեց հարևանի տղան հեգնանքով: Նա քանի որ ինձանից մեծ էր տարիքով, ես ոչինչ չասացի: Տանելը պարտություն էր, թողնելը՝ վտանգավոր: Իսկ շները քուռ ու լարված կանգնել էին իրար դեմ ու առեա միմյանց ուժերն էին չափում: Ես անձամբ դրանից՝ որևէ լավ բան չէի սպասում: Հարևանի շունը կրկնակի խոշոր էր մեր Ասլանից, երբեք չէին կապել և մյուս երեխաներն ասում էին, թե լավ էլ կերակրում են: Բայց ինչպե՞ս տուն տանեի Ասլանին: Սա ա՞յն տեղն էր, որ ինձ լըսեր, երբ, մանավանդ, իր պատվի հարցն էր: Եվ նա որոշեց չնահանջել ու միանգամից հարձակվեց հակառակորդի վրա: Իրար լավ գզում էին, մեկ էլ սարսափած տեսա, թե ինչպես Ասլանն ընկավ գետին, իսկ հակառակորդը հաղթական կանգնեց նրա վրա: Սակայն դա մի ակնթարթ էր:



digitised by A.R.A.R.@

Ու մինչ ես հուսահատված՝ Ասյա՜ն, Ասյա՜ն էի կանչում, հարևանի շունն սկսեց ճիգ թափել իր կոկորդը ազատելու համար և փախավ վնգստալով: Հարևանները շանը ներս առան անմիջապես ու դուռը ծածկեցին և քիչ անց անեծքներ էին լըսվում մեր շան հասցեին: Մինչդեռ Ասյան հնալով կանգնել էր հպարտ: Ես մոռացած ձյուն ու ցուրտ, նույնպես հպարտ կանգնել ու շուրջս էի նայում. վկաներ կա՞ն: Իսկ վկաներ շատ կային: Նրանք դիտում էին իրենց պատուհաններից կամ բակերի դռների մոտից: Ես Ասյային տուն տարա ու մի լավ կերակրեցի, խախտելով նրա օրաբաժինը:

Այդ օրվանից մեր Ասյայի հռչակն ավելի տարածվեց, իսկ հարևանի շունը վախից դուրս չէր գալիս փողոց: Ասյան այդ շատ կարևոր հաղթանակով բարձրացրել էր ոչ միայն իր հեղինակությունը, այլև՝ իմը: Այժմ երբ վեճ էր լինում մեր՝ հարևանների տղաներիս միջև, իմ կողմնակիցներից մեկն ասես ինքն իր համար՝ ասում էր.

— Սատանան ասում է Ասյային բաց թող:

Պարզ է, ես սատանային լողը չէի, սակայն այդ խոսքերից բոլորն զգաստանում էին:

Անցնում էին տարիները, և ես արդեն ուսանող էի: Բայց Ասյային կերակրելը, ինչ էլ լիներ, իմ մենաշնորհն էր: Ու երբ վերջին կուրսում, ձմռանը էքսկուրսիայի պետք է մեկնեինք Մոսկվա—Լենինգրադ, ես մերոնց անընդհատ զգուշացնում էի, թե երբ, ինչպես կերակրեն Ասյային, խնդրում էի դատարկ չթողնել ջրի ամանը և այլն, և այլն: Երբ վերադարձա, զգացի, որ նա էլ ինձ էր կարոտել և ուրախ ինձ նայելով, գլուխը մեկնում էր, որ փաղաքշեմ: Այդ իրավունքը նա միայն ինձ էր վերապահում և իր զգացմունքները չէր շռայլում:

Իսկ տարիներն անցնում էին և նա արդեն տասնհինգ տարեկան էր: Աչքերն արդեն խամրել էին և հիմա այլևս չէր էլ ձգտում շղթայից ազատվել ու գոնե մի քանի ժամով ազատություն վայելել: Այժմ ավելի շատ նստում էր բնի մեջ և տխուր-տրտում նայում:

Գարուն էր: Մեր փողոցի տները քանդում էին և նորակառույց շենքերում մեզ բնակարաններ էին տալու: Նոր բնակարանի հեռանկարը հաճելի էր, բայց որտե՞ղ էինք պահելու մեր Ասյային: Այդ օրերին մեր ողջ մտահոգությունն այդ էր: Մեկ առ մեկ հիշում էինք այն ծանոթներին, ովքեր բակ ունեին:

— Ախր շատ մեծ է, ո՞վ կվերցնի պահելու,— անհանգստանում էին մերոնք:

Եվ ինձ թվում էր ամենից տխուրն Ասյան է, նա ամեն ինչ նախազգում էր: Իմ լավ, իմ բարի Ասյան, իմ մանկության հավատարիմ ընկերը, որը դեռ ոչ մի երեխայի չէր վնասել, երբ արձակվել էր շղթայից: Չէր վնասել նաև փոքր շներին:

— Նոր տան հոգսերով զբաղվելու փոխարեն շան հոգսն եք քաշում,— մի անգամ զարմացավ մեր ծանոթներից մեկը:

Նա չգիտեր, թե ինչ է մեզ համար Ասյան: Իսկ մեր մտահոգությունն օրեցօր անում էր, արդեն քանդում էինք տունը, փոխադրում կահ-կարասին: Ասյան ինձ ավելի տխուր էր թվում: Մենք ձգձգում էինք տնից դուրս գալը, իսկ մեզ շտապեցնում էին: Բայց ի՞նչ անեինք Ասյային: Ու մի օր էլ, երբ աշխատանքի գնալուց առաջ (ես ավարտել էի ինստիտուտը), մոտեցա Ասյային կերակրելու, անակընկալի եկա: Ասյան չկար, գետնին ընկած էր շղթան: Շատ կանչեցի, շատ փնտրեցի, չկար ու չկար: Գնացի աշխատանքի: Ողջ ճանապարհին մտածում էի. «Մի՞թե վիրավորվել է մեզանից»: Բայց տասնհինգ տարում նման դեպք չէր եղել: Թե՞ զգում էր ինչ է կատարվում, հասկանում էր, որ տունը քանդում ենք ու տեղափոխվում և իրեն ենք նայում մտահոգ: Երևի հասկացել էր ամեն ինչ և չէր ցանկացել բեռ լինել մեզ, հեռացել էր ինքնակամ:

Երեկոյան, երբ աշխատանքից տուն եկա, մերոնք շատ էին տխուր: Հայրս գտել էր Ասյային խաղողի վազերի մեջ: Երևի զգալով իր վախճանը, չէր ցանկացել պառկել ու անշնչանալ իր բնի մոտ, մեր աչքերի առջև, ու նախընտրել էր այցու մի անկյունը: Հենց այդտեղ էլ թաղեցինք Ասյային:

Շատ տխուր բաժանվեցի մեր հին տընից ու մանավանդ այգուց, որտեղ թողեցի իմ մանկությունը և Ասյայի դատարկ բույնը:

Շատ տարիներ են անցել, և ես երբեք այլևս շուն չունեցա: Եվ պատճառը ո՛չ երրորդ հարկի բնակարանն էր, ո՛չ էլ բակ չունենալը: Լիներ էլ՝ չէի պահի:

Ասյայից հետո էլ ի՜նչ շուն...



digitised by A.R.A.R.@

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՄԻ ՕՐ ՊԱՊԻՍ ՋԵՌՆԱՓԱՅՏԻ ՀԵՏ

մանկագիր Վիկտոր Վարդանյանին

— Պա՛պ,— ասացի,— օրը բացվեց,
Վե՛ր կաց, գնանք անտառ:
Տե՛ս, կանչում են պատուհանից
Ամեն մի թուփ ու ծառ:
Գնանք շրջենք: Ի՞նչ ես նստել
յս սենյակում մենակ:
թե նստել շատ ես սիրում,
Նստիր ծառերի տակ:—
Նա տնքտնքաց.
— Անտառն է թաց...
Այսօր ոտքս է ցավում:
Ես չեմ կարող քայլել,— ասաց,—
Տես, ինչպես եմ հենում:
Գնա ինքդ, իսկ ես պառկեմ,
Շրջիր դու քեզ համար:
Թե ուզում ես՝ վերցրու քեզ հետ,
Ջեռնափայտս էլ դու տար:
Իմ փոխարեն թող նա գոնե
Խոտ ու ճյուղի դիպչի,
Քար ու փոսից քեզ հետ մեկտեղ
Ուլիկի պես թռչի:
Բայց շատ հեռու դու չգնաս,
Կմոլորվես հանկարծ,—
Ջեռնափայտը մեկնեց ապա,
Թախտին պառկեց հոգնած:
Ես դուրս ելա: Անտառը թարմ
Ասես ծափ էր տալիս:
Ծառը ծառին շշնջում էր.
— Տե՛ս, գալիս է, գալիս:—
Ես վազեցի: Եվ քիչ հետո
Անտառն ինձ գիրկն առավ:
Մի արահետ՝ ոլոր-մոլոր,
Իր ետևից տարավ:
Ջեռնափայտը ես թափ տալով,
Գնում էի թեթև,
Մեկ սուլելով, մեկ երգելով,
Առնում էի ես թև:
Հասա բացատ: Եվ ականջիս
Ջրի շշունջ հասավ:
Մի քիչ հեռու, խոտերի մեջ
Փոքրիկ աղբյուր տեսա:
Ինչ-որ մեկը քար ու խիճով
Շուրջը գոտ էր շինել,
Գոհից ներքև՝ քչքչացող
Մի պարզ առու հանել:
Ծունկ չոքեցի ու թեքվեցի
Ես աղբյուրին զուլալ:
Այս պաղ ջրի համար թեկուզ
Արժեր հեռուն այս գալ:
Կուշտ խմեցի: Հետո՝ ձեռքս
Ջեռնափայտին տարա:
— Թող,— ասացի,— նա էլ խմի,
Թող չմնա ծարավ:
... Մութ էր արդեն, երբ նույն ճամփով
Ես տուն վերադարձա:
Պապս կանչեց.
— Այս ո՞ւր էիր,
Աչքերս ջուր դարձան:
Քեզ չասացի՞ կմոլորվես,
Պետք չէ հեռու գնալ,
Ո՞վ է տեսել, որ երեխան
Մենակ գնա անտառ:
— Մենակ չէի,— ասացի ես,—
Բա սա ի՞նչ է, հը՞, պա՛պ:—
Ջեռնափայտը ցույց տվեցի
Եվ... պապիկս ժպտաց:
Ու պատմեցի՝ ինչ եղել էր...
Նա ինձ նայեց երկար.
— Վաղը,— ասաց,— համաձայն եմ,
Ինձ էլ քեզ հետ դու տար:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԲԱՌԸ ԶԱՐՄԱՑՆՈՂ ԶԻՆՎՈՐ Է

**Եզ** բառն սկզբում կոչվել է **եզն**, հետո ն հոդն ընկել է և մնացել է եզը: Հայերենի հնագույն բառերից է:

Ավանդությունն ասում է, որ նախամարդու համար ամենադժվարը հողը հերկել, փխրեցնելն էր: Եվ ահա, երբ նա մտմտում է, թե կենդանիներից որը պիտի օգնի իրեն, եզն ասում է՝ ես, ես, այդ պատճառով էլ, իբր, նա ստացել է եզ անունը:

14—15-րդ դարերի հայ մեծ փիլիսոփա Գրիգոր Տաթևացին գտնում էր, թե **եզ** բառն առաջացել է **հեզ** բառից:

**Եզ** է կոչվում երկու տարեկանից մեծ, ամորձատված և իբրև լծկան օգտագործվող արուն: Բանող ու մսատու այդ կենդանին հին Հայաստանում եղել է պաշտամունքի առարկա: Այդ պատճառով էլ **եզ** բառից կազմվել են անձնանուններ, ազգանուններ, տեղանուններ: Եզնիկ անունն է կրել 5-րդ դարի փիլիսոփա Եզնիկ Կողբացին: Եզյան ազգանունն են կրել հայկական շատ գերդաստաններ: Հայկական ՍՍՀ Շիրակի լեռնաշղթայի ամենաբարձր գագաթը կոչվում է Եզնասար: Հին Հայաստանում եղել են Եզնաձոր, Եզնոտ, Եզանցբերդ տեղանունները:

Փոխաբերական իմաստով **եզ** նշանակում է կամակոր ու ծանծաղամիտ, կոպիտ, անկիրթ մարդ:

**Եզ** բառն ունի նաև մի, միակ, անհատ իմաստը: Այդ արմատից է **եզակի** բառը: Երբեմն ձեզնից որևէ մեկը մի հրաշալի բան է տեսնում ու բացականչում. «ունիկում է»: **«Ունիկում»** լատիներեն է և բառացի նշանակում է **եզակի:** Ոչ ավել, ոչ պակաս: Հետևապես այդպիսի դեպքերում պետք է օգտագործել հարազատ **եզակի** բառը:

Հայերենի հրաշալի բառերից է **եզրը**, որ նշանակում է **ծայր, ափ, սահման, վերջ, ավարտ: Եզր** բառն այնքան է դուր եկել մեր պապերին, որ նրանք այն դարձրել են նույնիսկ անձնանուն: Հայերենում **եզր** է կոչվում նաև **տերմին** բառը: **Եզր** բառից է **ծովեզրը, ծովի ափը: Ափ** են ասում նաև ձեռքի ներսի կողմին, որից առաջացել է **հափշտակել** (ափի մեջ հավաքել, գավթել իմաստով) բառը: **Ափ** նշանակում է նաև **ջուր, հեղուկ:** Այդ իմաստը պահպանել են



digitised by A.R.A.R.@

**լափին տալ, հափ անել** (կուլ տալ), **շան լափ** և այլ կապակցություններ: Հայերենի ազգակից հնդեվրոպական լեզուներում **ափը** հնչում է **աք** կամ **օք** ձևով: Ռուսաստանի մեծ գետերից մեկը կոչվում է Օք, որ բառացի նշանակում է **ջուր:**

Աշխարհում իրենց բառագանձն անաղարտ պահող ներանձնացած լեզուներ չկան: Բոլոր լեզուներն էլ ներգործում են միմյանց վրա և ազդեցություններ կրում:

**Եզր** է կոչվում նաև գետի ափը (գետեզր):

Հիմա քննենք **տիեզերք** բառը, որ կազմված է **տի—եզերք** արմատներից: **Տի** նշանակում է **մեծ:** Օրինակ՝ **տիկին** նշանակում է **մեծ կին: Տիեզերք** նշանակում է **մեծ եզերք,** որ տիեզերք իմաստից բացի, ունի նաև **աշխարհ, երկիր,** փոխաբերաբար նաև **անեզր տարածություն** իմաստը: Այդ բառը շատ են օգտագործել մեր առաջին պատմիչներ Ագաթանգեղոսը, Եղիշեն, բազմահմուտ փիլիսոփա Գրիգոր Պահլավունի Մագիստրոսը:

**Տիեզերք** սքանչելի բառից են մեր օրերում ստեղծվել **տիեզերագնաց, տիեզերանավ, տիեզերագնացություն, տիեզերագոյացում, տիեզերաթռիչք, տիեզերակայան, տիեզերահըրթիռ, տիեզերանման** և ուրիշ բառեր:

**Եզր** արմատն ունեն **եզերել, եզրապահ** (սահմանապահ), **եզրեր, եզրագիծ, եզրագոտի, եզրադրվագ, եզրաթումբ, եզրածալ, եզրածիր, եզրակալ, եզրակացություն, եզրակցում, եզրահան, եզրահանգում, եզրաճաղ, եզրանախշ, եզրաշերտ, եզրապարիսպ, եզրատամ, եզրատաշ, եզրափակիչ, եզրաքար, եզրասանդուղք, եզրաբեմ** և տասնյակ այլ բառեր:

**Արդ** բառի մասին: Ինչպես նշում է մեծանուն լեզվաբան Հրաչյա Աճառյանը՝ **արդը** ընդարձակ գործածությամբ արմատ է, որ ներկայանում է մեզ բազմազան կերպարանքներով և նոխ ածանցումով:

**Արդ** նշանակում է **ձև, սարք:** Նրանից է առաջացել **անարդ՝ ձև չունեցող** բառը: Բոլորդ էլ գիտեք, թե ինչ բան է **արդուկը** կամ **հարթուկը:** Գրության այս երկու ձևերն էլ ճիշտ են, բայց առաջինն ավելի ճշգրիտ է: Բանն այն է, որ շատերը կարծում են, թե **արդուկել** նշանակում է միայն հարթեցնել: Ոչ: Այժմվանից սովորեք և մտապահեք, որ **արդուկել** նախ և առաջ նշանակում է **ձև տալ:** Այդ արմատով է կազմված **մակարդակ** բառը, որ բառացի նշանակում է **վրայի ձև, սահման, աստիճան: Խորանարդ** նշանակում է խորանի ձև ունեցող, **գմբեթարդ՝** գմբեթի ձև ունեցող, **ծործորարդ՝** հովտաձև, գոգավոր **վիմարդ՝** քարի պես, փոխաբերաբար՝ քարի պես ամուր, դիմացկուն, **արդար՝** նախնական իմաստով՝ ձև, կարգ ունեցող, ապա դրանից բխած՝ ուղիղ, ճշմարիտ, շիտակ, իրավ իմաստը: **Արդարի** հակառակն է **անարդարը, արդարև՝** ճշմարիտ, **հարդարել՝** վայելուչ ձև տալ, ուղղել, կարգավորել, **սեղանահարդար՝** սեղանը կարգի բերող, **բեմահարդար՝** բեմը կարգի բերող:

**Արդ** արմատն ունեն **յուսազարդ, մարգարտազարդ, ծաղկազարդ, զարդարանք, պատկերազարդ, նկարազարդ, լուսանցազարդ, սյունազարդ** բառերը:

**Արդ** նշանակում է նաև կատարած գործ, վաստակ: Այդ իմաստը պահպանվել է **արդյունք, ապարդյուն** (այսինքն՝ անարդյունք), **արդյունավետ** և ուրիշ բառերում:

**Արդ** բառը միաժամանակ ունի հիմա, այժմյա իմաստը: Ահավասիկ՝ **արդիական** այժմյան, **ցարդ՝** մինչև այժմ, **արդի ժամանակներում՝** մեր ժամանակներում:

Դե, ամենքդ էլ գիտեք, որ **հուր** նշանակում է **կրակ:** Իրենց մեջ **հուր** արմատն ու... նեն հետևյալ բառերը. **հրաբուխ, հրաբեկոր** կրակի բեկոր, **հրաբողբոջ՝** բոցավառվող, **հր...** **բոսոր՝** կրակի պես բոսոր, **հրաբորբ՝** կրակ... բորբոքված, **հրագույն՝** կրակի գույնի, **հր...** **գունդ** կրակի գունդ, **հրազեն՝** հուր արձակ... զենք, **հրաթաղանթ՝** հրե թաղանթ ունեցո... **հրալեզու՝** հրեղեն լեզու, բոց արձակող, **հր...** **խանձ՝** հրով խանձված, **հրածին՝** կրակ ծն... **հրակարմիր՝** հրի պես կարմիր, **հրակեզ՝** կր... կով այրված, **հրահան՝** կրակ հանող, **հր...** **ցան՝** հուր, կրակ ցանող, արձակող, **հրափ...** փող, որից կրակ է ժայթքում, **հրդեհ՝** որ... բոցավառվող բան (շենք, անտառ, արտ... այլն), **հրշեջ՝** հրդեհը մարող, հրդեհը շիջ...

Հետաքրքրական է **հրաման** բառի ծագու...

**Հրաման** նշանակում է կրակի աման: Վաղ... ջագույն ժամանակներում որևէ թագավ... հարևան թագավորին պատերազմ էր հ... տարարում այսպես: Մի ամանի մեջ կրակ... լցնում և բանբերի միջոցով ուղարկում հա... վանին: Իմաստն այն էր, որ եթե չհնազա... վես՝ ես քո երկիրը հրի կմատնեմ: Այդ հր... մանը համապատասխանում է հետագա ժ... մանակների նոտային: Այնուհետև **հրամա...** ստացավ **կարգադրություն** իմաստը, որ ս... վում էր գրավոր կամ բանավոր: **Հրամ...** բառից էլ առաջացել է **հրամանատար** բա... որ նշանակում է մի որոշակի զորամ... պետ:

digitised by A.R.A.R.@

# ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶԸ

Նախադպրոցական դաստիարակության սկզբնավորողը եղավ գերմանացի անվանի մանկավարժ Ֆ. Ֆրյոբելը: Նա 1840 թվին հիմնեց առաջին մանկական հաստատությունը և այն անվանեց մանկապարտեզ: Ռուսաստանում առաջին մանկապարտեզները բացվեցին 19-րդ դարի 60-ական թվերին: Մի քանի տարի անց այդպիսիք երևան եկան նաև մեզանում, հայ մշակույթի կենտրոններից մեկում՝ Թիֆլիսում:

Հայ ժողովուրդը զուրկ էր պետականությունից: Պետական հովանավորության և աջակցության բացակայության պայմաններում մըշակութային տարբեր ձեռնարկումների հեղինակները առանձին խանդավառ անհատներ էին: Այդպիսի եռանդուն կրթական գործիչներից մեկն էր Սոֆյա Բաբայանը՝ հայ նախադպրոցական կրթության ուղեհարթը մեզանում: Նա ժամանակի զարգացած հայ կանանցից էր, գիտեր մի շարք լեզուներ՝ հայերեն, վրացերեն, ռուսերեն և գերմաներեն, ստացել էր բարձր մասնագիտական կրթություն: 1874 թ. իր ամուսնու հետ նա ուղևորվում է Գերմանիա և այնտեղ հանգամանորեն ուսումնասիրում ֆրյոբելյան ծաղկոցների դրվածքն ու փորձը: Երեք տարի ուսանում է Գոթա քաղաքի մանկապարտիզպանուհիների և ուսուցչուհիների սեմինարիայում և գիտելիքները կատարելագործում Վիեննայում:

Թիֆլիս վերադառնալուց հետո, Բաբայանը 1877—1878 թվերին պաշտոնավարում է «Գայանյան» օրիորդաց ուսումնարանում և նախապատրաստական դասարաններում մտցնում ֆրյոբելյան խաղերը: Այս միջոցառումը իրեն լիովին արդարացնում է: Հիմնելիք մանկապարտեզը լինելու էր ընտանեկան և փորձնական՝ առայժմ իր և մի քանի ծանոթ ընտանիքների երեխաների համար, սաների թիվ չէր անցնելու 30-ից: Մանկապարտեզը հանդիսանալու էր նախապատրաստական դասարան Թիֆլիսի Մուղնու եկեղեցու ծխական դպրոցի համար: Բաբայանը իր ամուսնու՝ բժիշկ և մանկավարժ Ավետիք Բաբայանի և Գայանե Հովհաննիսյանի հետ 1880 թվին հիմնադրում է Ֆրյոբելյան ընկերությունը, որի հիմնական նպատակն է լինում չքավոր երեխաների համար մանկապարտեզների կազմակերպումը: Նույն 1880 թվի հոկտեմբերի 21-ին Էջմիածնի սինոդի որոշմամբ նրանց թույլատրվում է կազմակերպել մանկապարտեզ: Առաջին ժողովրդական մանկապարտեզը ընկերությունը ստեղծում է 1882 թվի հուլիսի 14-ին Թիֆլիսի Ջրկինենց եկեղեցուն կից: Ասենք նաև, որ 1882—1883 թվերին Բաբայանի մանկապարտեզում է աշխատել մեծանուն գրող և մանկավարժ Ղ. Աղայանը: Մանկական այս միջավայրը տաղանդավոր մանկագրի համար դառնում է իսկական ստեղծագործական ներշնչարան, որտեղ նա հնարավորություն է ստանում ուսումնասիրել երեխաների հոգեբանությունը, խաղերը, հակումները և հետաքրքրությունները: Իր գործունեության այս շրջանի մասին Աղայանը խոսում է սիրով և գոհունակությամբ:

Այնուհետև ֆրյոբելյան մանկավարժական ըմբռնումները ուղի են հարթում իրենց համար և տարածվում այլ վայրերում. մանկապարտեզներ են ստեղծվում նաև Երևանում, Ալեքսանդրապոլում, Ախալցխայում, Կարսում, Բաքվում և այլուր:

ՌՈՒԲԵՆ ՆԱՀԱՏԱԿՅԱՆ



digitised by A.R.A.R.@

# «Արագիլ» վերադարձավ մրցանակով

Արդեն չորս տարվա պատմություն ունի Լենինականի № 10 դպրոցի «Արագիլ» ինտերնացիոնալ բարեկամության ակումբի և Ուկրաինայի Իվանո-Ֆրանկովսկի մարզի Նադվորնայա քաղաքի № 8 դպրոցի պիոներների կապը։ Լենինականցիները բարեկամներից հաճախ են նամակներ ստանում։ Նրանց ինտերնացիոնալ բարեկամության ակումբի սրահում մի մեծ վահանակ կա. այստեղ նամակներ են, ուկրաիներեն գրքեր և այլ հուշանվերներ։

Երբ ինտերնացիոնալ բարեկամության ակումբի նախագահ Արմինե Դանիելյանը բաց արեց հերթական նամակը, տեսավ մի փոքրիկ հրավիրատոմս։ Արմինեն բարձրաձայն կարդաց. «Թանկագի՛ն հայ բարեկամներ, հրավիրում ենք մասնակցելու Կովպակի պարտիզանական ջոկատի հաղթարշավի 40-ամյակին նվիրված պատանի ինտերնացիոնալիստների համամիութենական առաջին փառատոնին»։

Ակումբի անդամները ընկլսեցին նախապատրաստվել. հարկավոր էր բարեկամներին պատմել հարազատ քաղաքի՝ Լենինականի նվաճումների, նրա տեսարժան վայրերի մասին, սովորել ոչ միայն ազգային, այլև եղբայրական ժողովուրդների նոր երգեր ու պարեր։ Եվ ահա եկավ ուրախալի օրը. «Արագիլը» մեկնեց Ուկրաինա։ Կայարանում հայ երեխաներին աղ ու հացով դիմավորեցին։ Այդ օրը նրանք ծանոթացան իրենց բարեկամների պիոներական դրուժինայի գործերին, շրջագայեցին քաղաքում։

Ամենահետաքրքիրը փառատոնի բացումն էր։ Դահլիճում ելույթ ունեցան Միության տարբեր վայրերից եկած պատվիրակությունները։ Եվ հանկարծ հաղորդավարը հայտարարեց.

— Սովետական Միության հերոս Կովպակի պարտիզանական ջոկատում մյուս ազգերի զավակների հետ միասին թշնամու դեմ մարտնչել են նաև հայ ժողովրդի դյուցազունները։ Այսօր մեր փառատոնի հյուրերն են Հայաստանի պատվիրակները՝ Լենինական քաղաքից։

«Արագիլի» ելույթն ընդունվեց ջերմ ծափահարություններով։ Գրական երաժշտական համարը ներկայացրեց Հայաստանն իր անցյալով ու ներկայով։ Հետո դահլիճում հնչեց Կովպակի պարտիզանական ջոկատի լենինականցի մարտիկների ձայնագրված ողջույնը։ Փառատոնի բացմանը ինքնատիպ մասնակցության համար «Արագիլը» պարգևատրվեց առաջին մրցանակով և կոմերիտմիության քաղկոմի պատվոգրով։

---

Խմբագրությանն են դիմել Աբխազիայի հայկական դպրոցների մի խումբ աշակերտներ, խնդրելով տպագրել իրենց դպրոցների հասցեները և նամակագրական կապ ստեղծել Հայաստանի դպրոցականների հետ։

384900 Абхаз. АССР Сухумский р-н. Яштхвская ср. школа

384900 Абхаз. АССР Сухумский р-н. Верхнеэшерская ср. школа

384900 Абхаз. АССР Сухумский р-н. Ачадарская восьмилетняя школа

384900 Абхаз. АССР Сухумский р-н. Нижнеэшерская ср. школа

384965 Абхаз. АССР Гульрипшский р-н, Дранский сельсовет, Хумуршкурская ср. школа

384840 Абхаз. АССР Гудаутский р-н. Псирцхинская ср. школа



digitised by A.R.A.R.@

ԴՈՆԱԼԴ ԲԻՍԵԹ

# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԾԱՌԸ



Արևը շողշողում էր այդ ծառի վերևը. քամին մեղմիկ խաղում էր ճյուղերի արանքում, և տերևները շշնջում էին. «Երազի՜ր, երազի՜ր, երազի՜ր...»

Դա մի կախարդական ծառ էր: Ով որ կանգնում էր նրա տակ ու երազում, նրա երազանքը իրականանում էր:

Ծառի մոտ գտնվող տանը ապրում էր մի գեր ծերուկ: Նրա անունը Վիլյամ Սմիթ էր: Նա գյուղական իր խանութում օճառ էր վաճառում և չէր սիրում տղաներին ու աղջիկներին:

Մի օր նա կանգնեց ծառի տակ և ասաց.

— Ես կցանկանայի, որ իմ շուրջ գտնվող բոլոր տղաներն ու աղջիկները լուսնի վրա լինեին:

Հենց որ նա այս ասաց, բոլոր տղաներն ու աղջիկները հայտնվեցին լուսնի վրա: Այնտեղ ցուրտ էր և ամայի: Փոքրերից ոմանք սկսեցին լաց լինել:

Բայց մայրերը շատ հեռու էին, չէին լսում նրանց:

Հենց որ երեխաները գնացին, ծառի վրա թռչունները դադարեցին երգել:

Կեռնեխը նայեց միստր Սմիթին և ասաց.

— Ես կուզենայի, որ բոլոր երեխաներն այստեղ լինեին:

Միստր Սմիթն ասաց.

— Ես կուզենայի, որ նրանք բոլորը լուսնի վրա լինեին:



digitised by A.R.A.R.@



Սև կեռնեխն ասաց.

— Ես կուզենայի, որ նրանք բոլորը այստեղ լինեին նորից:

Երեխաները սաստիկ շփոթվել էին, չգիտեին, թե որտեղ են:

Միսթր Սմիթը ոտքը գետնին խփեց և ասաց.

— Ես կցանկանայի... — բայց չկարողացավ շարունակել, որովհետև սև կեռնեխը առաջ ընկավ նրանից:

— Ես կուզենայի միսթր Սմիթը բարի լիներ:

Եվ միսթր Սմիթը, որ պատրաստվել էր ասելու. «Ես կուզենայի, որ բոլոր երեխաները լուսնի վրա լինեին», հանկարծ միտքը փոխեց, գլուխը ետ գցեց և ասաց.

— Ես կցանկանայի, որ բոլոր երեխաներն այս երեկո թեյի գային ինձ մոտ և մենք գաթա, նարնջահյութ և լիմոնադ ունենայինք: Եվ ես օճառ վաճառելու փոխարեն քաղցրավենիքի խանութ ունենամ: Եվ ես թույլ չտամ որևէ մեկն ինձ Վիլյամ Քաղոգան Սմիթ ասի, ես պարզապես Բիլ Սմիթ եմ:

— Ուռռա՜, ուռռա՜, ուռռա՜...

Նա երեք անգամ գլուխկոնծի տվեց, և ծառի վրայի բոլոր թռչունները սկսեցին նորից երգել: Արևը շողաց, ծառի ճյուղերի արանքում քամին մեղմիկ խաղաց, տերևները շշնջացին. «Երազի՜ր, երազի՜ր, երազի՜ր...»

Անգլ. թարգմ. Կ. ՍԱՐԳՍՅԱՆԸ

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

# ՄԱՅՐԸ

Կը՛չ, կը՛չ, կը՛չ...
Կաչաղակը կչկչում էր,
Սրտապատառ ծվծվում էր:
Իր ձագուկը դու մի ասա,
Գտնվում էր ցածի փոսում,
Եվ երբ որ ես այնտեղ հասա,
Մայրաբար էր հետս խոսում...
Բան հասկացա նրա խոսքից
Ու հանեցի ձագին փոսից,
Տարա դրի բարձր մի տեղ:
Կաչաղակի ձայնը ահեղ
Դարձավ արդեն այլ կչկչոց,
Դարձավ քաղցր ու անուշ ծվոց.
Այդ զույգ ձայնը կաչաղակ մոր
Ականջումս է մինչև այսօր:

# ԵԹԵ

Լռելը ճիշտ է,
Եթե քար ես:
Զնգալը ճիշտ է,
Եթե զանգ ես:
Ճիշտ է հոսելը,
Թե գետակ ես,
Խոսելը ճիշտ է,
Թե գիտակ ես:

# ԼԵՌԱՆ ԱՂԲՅՈՒՐԸ

Որտեղի՞ց է ջուրն աղբյուրի,
Ծորակի՞ց է գալիս:
Չէ՛, երևի ջուրն աղբյուրի,
Ջորակից է գալիս:
Այդ էլ ճիշտ չէ, ջուրն աղբյուրի
Լեռներից է գալիս:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

# ՀԵՐԱԿԼԵՍԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՍԽՐԱՆՔԸ

(Սկիզբը № 5-ում)

Պալատ հասնելով, լոգանք ընդունելուց և բուրումնալի յուղերով մարմինը օծելուց հետո, ծիրանի քիտոնը հագին և բաղեղապսակը գլխին՝ Հերակլեսն Ադմետոսի և քաղաքի երևելի երիտասարդների հետ խնջույքի սեղան նստեց։ Սեղանների շուրջ չորս կողմ վխտում էին ծառաներն ու աղախինները՝ հյուրերին ուտեստներ ու ըմպելիքներ մատուցելով։ Նրաժիշտները նվագում էին, երգիչները երգում, թնդում էր պալատը խրախճացողների ուրախ աղմուկից, իսկ դրսում առափնյա քաղաքի խոնավ գիշերվա մեջ, դռների մոտ խռնված քաղաքի մուրացիկ ու ընչաքաղց մարդիկ սպասում էին, թե երբ կհագենան, կլիանան ու կհիշեն՝ մի կտոր բաժին կբերեն իրենց։ Ժամերն անցնում էին, ներսում աղմկում, ուրախանում էին, աշուղները գովաբանում ու փառաբանում էին մեծ հերոսին, մնջակատակները ցուցադրում էին Հերակլեսի նշանավոր սխրանքները, իսկ այստեղ անոթի մարդիկ այլ բան էին ասում.

— «Ընկերասեր է», «ժողովրդասեր է»... զարմանալի սխրանքներ է կատարել։ Բայց ու՞մ հացն է կերել։ Ո՛չ ցանել է, ո՛չ հնձել, կյանքում ձեռքը մանգաղ կամ մուրճ բռնած



digitised by A.R.A.R.@

չկա։ Ի՞նչ օգուտ են բերել նրա սխրանքները նրան հաց ու ջուր տվող աշխատավոր ժողովրդին։

— Բերանին՝ ոչինչ, միայն խոսելու նյութ։

— Խե՛ղճ ժողովուրդ, նրան ավելին պետք էլ չի, նա հեքիաթներով է սնվում։

— Բայց դրանից նրա փորը չի կշտանում։

Այսպես սկսեցին վատաբանել, և կշտամբում էին նրան, որ Միկենեի Էվրիթևս փոքրոգի, վախկոտ ու ողորմելի թագավորի ընտրուկն է, իր սխրանքները կատարում է նրա համար, նրա հրամանով, որ այդ սխրանքները տպավորիչ են, բայց ոչ մի իմաստ չունեն։ Հիմա էլ, հրեն, դժոխքից եռագլուխ Քերբեր շունն է հանել լույս աշխարհ, որ ի՞նչ։ Այո, սարսափելի է, այո, ամեն մարդու գործ չէ, բայց Էվրիթևսը ցանկացել է տեսնել Քերբերին ու նրա ստրուկը հնազանդ կատարել է տիրոջ հրամանը։

Ադմետոսը պատահական բակ էր ելել, տեսավ հիվանդ ու սովյալ մարդկանց խումբը։

—Ուտելիք բերեք այս մարդկանց,— ասաց նա իր տան ծառաներին։— Մի՞թե ձեզ չեմ հրամայել ես, որ սեղան նստածների հետ միաժամանակ այս մարդկանց էլ ուտելիք բերեք ու գինի։

— Տե՛ր,— ասացին ծառաները,— բայց այսօրվա քո հյուրերը այնքան շատ են ու սեղանը մեծ, որ նոր հազիվ ավարտեցինք սեղանի պատրաստությունը։

— Բերեք առատորեն ամեն ինչից այս մարդկանց համար,— նորից ասաց Ադմետոսը։

Մուրացիկներն արագ շարվեցին սալահատակին և շուտով այստեղ էլ սկսեց խնջույքը տաքանալ։ Երբ կերան, լիացան ու հագեցան, նույնպես կարիք զգացին զվարճանալու։ Ներսում ինչ անում, պատմում կամ խաղում էին դերասանները, այստեղ լսում և վերածում էին զավեշտի։ Ընտրել էին իրենց միջից ամենանիհար, ոսկրոտ, սապատավոր մի լղրճուկ, բազմեցրել սեղանի գլխին, կընքել Հերակլես անունով, երգում, գովերգում էին նրան, այնպիսի հռհռոց էր այստեղ, որ մի քանի անգամ խրախճացողները մարդ ուղարկեցին իմանալու, թե ինչ է կատարվում դրսում։

Կեղծ Հերակլեսն իր դերը հիանալի էր կատարում, ինքը՝ մի թիզ, նիհար, անմկան մի ճպուռ, այնպիսի սխրանքների մասին էր պատմում, որ լսողները ծիծաղից թուլանում, փորը բռնած թավալվում էին գետնին։ Այս ու այն կողմից ոսկորներ էին նետում դեպի սեղանի գլուխը, իբր մսի լավագույն կտորները են դրանք, Հերակլեսի գլխին տալով ստիպում էին պատմել, թե ինչպես նա զսպեց Կրետեյան ցուլը, ինչպես տիրացավ Դիոմեդես արքայի մարդակեր նժույգներին, ինչպես հափշտակեց ամազոնուհիների թագուհի Իպոլիտեի անձնական գոտին, հատկապես այս վերջին պատմությունը լղրճուկն այնպիսի մի փայլով ու դիմաշարժի երկդիմի խաղով ցուցադրեց, այնպես երկիմաստ խաղաց գոտին թագուհու մեջքից ազատելու տեսարանը, որ ամբոխի ծիծաղի, հռհռոցի և հարայհրոցի վրա Հերակլեսը, Ադմետոսը և հյուրերից շատերը դուրս եկան տեսարանը դիտելու և իրենք էլ ամբոխի հետ կանգնած քրքջում և զվարճանում էին։

Նախ գոտին արձակելիս երևակայական թագուհին Հերակլեսի ձեռքերի հպումից խըտուտ էր գալիս և ինչ-որ հիմար ձևով քըրքջում և ջարդոտվում էր, ապա հրմշտոցի ժամանակ երկուսով ընկան գետնին և թավալվելով գլորվում էին։ Մինչև իսկ կանայք իրենց պարկեշտությունը մոռացած ըսկըսեցին ծիծաղել՝ ձեռքի ափով թաքցնելով իրենց դեմքը տղամարդկանցից։

— Անմահների կաճա՛ռը վկա,— բացականչեց Հերակլեսը,— սրանք մեզնից պակաս չեն զվարճանում։ Եվ պաշտում են մի հերոսի, որն ինձնից ավելի սիրված է այստեղ։

Նրանք կրկին վերադարձան պալատ, նստեցին սեղանների շուրջ, իրենց տեղերում, և մի պահ դադարած խրախճանքը կրկին թընդաց։ Բազմաթիվ ջահերի լույսերի տակ, ծխի ու խնկարկվող բուրմունքի ծովում ալեկոծվում էին սեղան նստածների երիտասարդ գլուխները, զնգում էին բախվող գինու պղնձե թասերը, երգ էր, աղմուկ, երաժշտություն, կանայք սկուտեղների մեջ բերում էին մեկ տարեկան հորթի գոլորշի արձակող մսակտորները, տղամարդիկ գլորելով տանում էին գինու դատարկ կարասները, գլորելով բերում լիքը կարասները։

Կես գիշերն անց իր շքախմբի հետ եկավ նաև Փերատոս արքան։ Բոլորը ոտքի ելան, գինովցած Հերակլեսը երերալով ընդառաջ գնաց տանտիրոջը։ Հյուրին ողջունելուց հետո, արքան աչք ածեց հավաքույթի վրա, ասաց.

— Հունաստանի պատանիները զվարճանում են... Ի՞նչ տղաներ են, ի՞նչ կանայք են արժանի ձեզ և ի՞նչ սերունդ է ծնվելու ձե-



digitised by A.R.A.R.@

զանից, ի՞նչ ոսկեդար է սա, երկիրս փթթում է: Հիանում և հպարտանում եմ:

Արքան եկավ ու նստեց Հերակլեսի կողքին և մի պահ դադարից հետո՝ թնդացին երգն ու երաժշտությունը:

— Դու դժոխքից հանել ու բերել ես Քերբեր շանը,— ասաց արքան Հերակլեսին,— կատարել ես Էվրիթևս արքայի հրամանը: Լավ ես անում, պետք է ծառայել, շատ արժանավոր թագավոր է Միկենի թագավորը, հպատակը պետք է խոնարհ լինի իր թագավորին: Որքա՜ն է գեղեցկացնում հերոսին համեստությունը: Սքանչելի է քո արարքը, գովում եմ: Ես նկատի ունեմ քո հեզությունն արքայի և նրան անմռունչ քո ծառայությունը: Քո բոլոր հրաշալի սխրանքները դու կատարում ես արքայիդ հրամանով, և հենց դրանով նրանք ավելի սքանչելի են:

Հերակլեսը բավականին գինովցած էր, բայց հառաչեց տխրությամբ:

— Երբ իմ բոլոր տասներկու սխրանքներն էլ կատարած կլինեմ, Էվրիթևս թագավորը ազատություն կտա ինձ ու կարձակի ինձ ստրկությունից, ես այլևս ազատ մարդ կլինեմ ու կկատարեմ միայն իմ սրտի ուզածը: Ինչքան ընչազուրկ ու զրկված մարդիկ կան, որ պետք է ես օգնության հասնեմ:

— Զավա՜կս,— ասաց Փերատոս արքան, —ինչի՞դ է պետք այդ դատարկ ազատությունը, դա վատ օրինակ կլինի մյուս ստրուկների համար, մենք շատ և շատ հզորազոր ու հանճարեղ մարդիկ ունենք, որ նույնպես ստրուկ են: Ու՞մ պիտի օգնության հասնես, եթե աշխատավոր մարդը խեղճ չլինի, ո՞վ պիտի աշխատի, բոլորը կգան մեզ հետ սեղան կնստեն: Ավելի լավ չէ՞ մնաս ու ծառայես քո արքային: Ամեն մի թագավոր կարիք ունի քեզ նման մեծ, հզոր ու անվախ ստրուկների: Եթե իմ թագավորական բանակում լինեին քեզ նման հարյուր, հազար, տասը հազար Հերակլեսներ՝ հլու-հպատակ թագավորական իմ հրամանին, ողջ աշխարհի բոլոր պետությունները...

Այդ ժամանակ դահլիճի կենտրոնում մնջակատակները ցուցադրում էին Հերակլեսի սխրանքներից մեկը ևս: Մեկն Ատլասն էր, երկնակամարը ուսերին պահող Տիտանը, սեղանից վերցրեց պղնձե սինին, դրեց ուսերին. դա երկնակամարն էր: Մյուսը մոտեցավ նրան. դա էլ Հերակլեսն էր: Սկսեցին հայտնի տեսարանը՝ կապված Ատլասից խորամանկորեն անմահ խնձորները կորզելուն:

— Ի դեպ,— ասաց արքան, դիմելով Հերակլեսին,— Հերակլե՛ս, սիրելի՜ զավակս, արդյոք գրպաններումդ պատահաբար չի՞ մնացել անմահական խնձորներից գոնե մեկը: Միթե՞ ավելի արժանավորին պիտի անմահացնես այդ խնձորներով...

Հերակլեսը թասը գլխին քաշած գինի էր խմում: Ցած դրեց, բերանը չորացրեց ափի հակառակ մասով, բարեհոգորեն ասաց.

— Իմ ամբողջ զգեստը Կիթերոնյան առյուծի մորթն է, տե՛ր արքա: Այդ առյուծը գրպաններ չուներ:

Հյուրերը հռհռացին, իսկ արքայի հպատակները լուռ մնացին:

Մնջակատակները սկսեցին ցուցադրել Հերակլեսի մյուս նշանավոր սխրանքը՝ Նեմեյան առյուծին խեղդամահ անելը, սակայն արքան ձեռքի շարժումով ընդհատեց խաղը և սկսեց պատմել, ինչպես պատանեկան տարիներին, հիսուն-վաթսուն տարի առաջ, ինքը բնի մեջ կենդանի աղվես է խեղդել:

— Ծխո՞վ, արքա՛,— միամտորեն հարցրեց հյուրերից մեկը:

— Այս բազուկներով,— լայն թևքերի մեջ սոսկալի բարակ թևերը ցուցադրելով, ասաց արքան:— Այն ժամանակվա աղվեսներն այժմյան առյուծներից զարհուրելի ու սարսափելի էին: Հիմա առյուծ խեղդելն ինչ է ո՞ր... Իմ խեղդած աղվեսը Հերակլեսի խեղդած առյուծին կխեղդեր:

Հյուրերն ու Հերակլեսի ընկերները, որ Փերատոս արքայի հպատակները չէին և նրանից վախ չունեին, քահ-քահ ծիծաղեցին, իրար աչքով արին, սկսեցին կրկնել նրա խոսքերը.— Իմ խեղդած աղվեսը քո խեղդած առյուծին կխեղդեր...

Արքան զգաց, որ ծաղրվում է, դատարկ պատրվակով թողեց սեղանը, դուրս եկավ: Շքախումբը հետևեց նրան:

Գահասրահում նա զայրացած ետ ու առաջ էր քայլում և գոռգոռում:

— Նա՞ է հերոս, Հերակլե՞սն է հերոս... Նրան չէ՞ր Լիդիայի Օմփալե թագուհին կնկա շորեր հագցրել, խոհանոցում ծառայում էր, կնկա նման թել էր մանում՝ ձեր այդ նշանավոր հերոս Հերակլեսը...— Արքան վազվզոցը մի պահ դադարեցրեց, ձգվեց, աշխատելով խրոխտ կեցվածք ընդունել:— Այո՛,— ասաց նա,— իմ խեղդած աղվեսը նրա խեղդած առյուծին կխեղդեր:

Այստեղ պալատականները հանկարծ տեսան, որ արքան զարմանալի նման է հրապարակի խեղկատակին, որն իրեն Հերակլես էր երևակայում, զվարճացնում ամբոխին:



digitised by A.R.A.R.@

Այդ ժամանակ խնջույքի սրահից լսվեց մի նվագ, որ բոլորին ծանոթ էր. դա Ալքեստիդեի սիրելի պարեղանակն էր, ուրեմն այնտեղ նա արդեն պարում էր:

Սքանչելի էր Ադմետոսի կնոջ պարը, ով լսեց, գործը թողած վազեց՝ ծառա, աղախին, մատովակներ, անգամ արքայի շքախմբից շողոքորթորեն նրան նվիրվածներից շատերը սուտ պատրվակով լքեցին արքային ու վազեցին խնջույքի սրահ:

Ադմետոսն էր նվագողը և նրա նվագը նույնքան նշանավոր էր, որքան կնոջ պարը: Անհայտ էր, թե ինչ հրաշքով էին այդ հընչյունները արարվում նրա մատների ու կիֆարայի լարերի խաղից, հիրավի աստվածատուր էր նրա շնորհը, գիտեին, որ արքայական տանը իր հովվության տարիներին Ապոլոնն էր իր սիրելի սանիկին սովորեցրել կիֆարա նվագելու արվեստը:

Ալքեստիդեն հովից էլ թեթև սահում էր մարմարե սալահատակին և նրա նրբահյուս շղարշը թափանցիկ ամպի նման կրնկակոխ հետևում էր նրան, պտտվում նրա պտտվող մարմնի շուրջը, վեր-վեր նետվելիս ելնում երդիկի ծխի նման ու իջնում որպես անկշիռ մի փետուր: Մերթ ասես նրան խաբս տալով՝ Ալքեստիդեն ճարպկորեն խույս էր տալիս և ամպը մի պահ հապաղելով՝ կրկին նետվում էր նրա ետևից, մերթ ասես միմյանց գիրկն էին նետվում և շղարշը սպիտակ ալիքի նման նրա կրծքին փշրվելով, փըրփուրներով թափվում էր ցած: Նրանք ասես երկուսով էին, ճերմակ շղարշն ասես մի սիրող ոգի էր գեղեցկուհի կնոջը հետամուտ:

Բոլորը հափշտակված նրան էին նայում, ոմանք ելել էին տեղերից, որ մոտիկից դիտեն, իսկ Ալքեստիդեի ժպիտը սրահի բոլոր ծայրերից միայն իր ամուսնուն էր հառված և Ադմետոսն էլ իր պայծառ աչքերը նրանից չէր կտրում: Նրանց մանկահասակ որդին ու աղջնակը հոր կողքին կանգնած խփում էին փոքրիկ ծնծղաները, նվագակցում, ծիծաղում, հրճվում, և նայողներին ասում էին՝ ահա հիրավի երջանիկ մի ընտանիք:

Անգամ Հերակլեսն էր հուզվել, որ ժայռի նման կարծր նրա սրտի համար անսովոր բան էր, նա հասկանում էր, որ մեծագույն պատվի է արժանանում, շնորհակալության խոսք չէր գտնում, միայն նույնն էր ասում.

— Ո՛վ Ադմետոս, սա անկրկնելի՛ է, սա անմոռանալի՛ է, այս պատվին միայն անմահնե՛րն են արժանի:

(շարունակելի)



Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

Եղել է ժամանակ, որ քարանձավաբնակ մարդու գլխում առաջացել է նկարելու և նկարածը կավով ներկելու ցանկություն: Հետո էլ ծագել է պատկերների և գծիկների միջոցով իր մտքերը հաղորդելու անհրաժեշտությունը: Եվ նա վերցրել է կարծր քարի մի կտոր և քամիներից ու անձրևաջրի շփումից լերկացած ժայռերի վրա անվարժ խազմզել է: Այդպիսի ժայռապատկեր-ժայռագրեր այժմ էլ գիտնականները մեծ քանակությամբ հայտնաբերում են աշխարհի տարբեր վայրերում. այդ թվում նաև մեզ մոտ՝ Հայաստանում: Այնտեղ կան և՛ որսի դրամատիկ տեսարաններ, և՛ ընտանի դարձվող առաջին կենդանիներն ու բույսերը, պատկերված են առաջին արորն ու

Բարձր, անմատչելի ժայռերի վրա իրենց ռազմական հաղթանակների և հարստությունների մասին են փորագրել Բաբելոնի, Պարսկաստանի, Արարատյան և հին աշխարհի մյուս արքաները՝ երեք, չորս հազար տարի առաջ: Դրանք սեպաձև նշաններ են, որոնք դուք՝ պատանի՛ բարեկամներ, անշուշտ տեսած կլինեք մեր Երևանի պատմության թանգարաններում: Հենց այդպիսի սեպագիր մի արձանագրությունից էր, որ մեր հնագետները պարզեցին Երևանի հիմնադրման ճիշտ տարեթիվը:

...Սակայն, որքան մնայուն էին քարերի վրա փորագրված արձանագրությունները, նույնքան և անհարմար էին տեղից տեղ փոխադրելու համար: Անհրաժեշտություն զգաց-

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԱՄԵՆԱՄԵԾ ՀՐԱՇՔԸ

## Ինչի վրա և ինչով են գրել մարդիկ



առաջին անիվը... Դրանք պատմում են նախնադարյան մարդու հավատալիքների, թվաբանական և աստղաբաշխական առաջին պատկերացումների և այն մասին, թե ինչպես է մեր հեռավոր նախահայրը պարզ նկարներից անցել գաղափարագիր-ընդհանրացման: Այդ տեղի է ունեցել ոչ մեկ օրում, ո՛չ էլ մեկ տարում. դարեր են անցել, մինչև որ ստեղծվել են առաջին իսկական գրերը՝ հին եգիպտական հիերոգլիֆները: Այդ սրբազան համարված գրերը երկաթե սեպերով փորագրըվել են եգիպտական պալատների ու աշտարակների պատերին, սյուներին, հաճախ էլ փարավոնների պատկանող դամբարանական առարկաների վրա:

վեց գրել մեկ այլ նյութի՝ կավի վրա: Հին քաղաքակրթությունների կործանումից անցել էին դարեր, նոր սերունդներն արդեն մոռացել էին կավե գրքերի մասին, երբ մի անգամ, 1849 թվականին, անգլիացի ճանապարհորդ Օստին Հենրի Լեյարդը Տիգրիս գետի ափին գտնվող Նեմրութ բլուրը պեղելիս, հողի շերտի տակ հայտնաբերեց 2 500 տարի առաջ կործանված մի պալատ: Դա Ասորեստանի հզոր թագավոր Ասուրբանիպալի պալատն էր: Գտածոների մեջ ամենանշանակալիցը այն երեք հազար կավե փոքրիկ աղյուսներն էին, որոնք կազմում էին թագավորի 22 000 սալիկներից կազմված շքեղ գրադարանի մի մասը: Իսկ ի՞նչ էր գրված 8—4



digitised by A.R.A.R.@

սանտիմետր հաստությամբ և 20—30 սանտիմետր մակերես ունեցող այդ գիրք-սալիկների վրա: Երբ գիտնականները վերծանեցին սեպագրերը, պարզվեց, որ այնտեղ քրմերը շարադրել են օրենքներ, նկարագրել պատմական դեպքեր, ռազմական արշավանքներ: Հետագայում, Նեմրութ բլուրի վրա հայտնաբերված մի տաճարում գտան կավե սալիկներ, ուր գրված էր Գիլգամեշի մասին դաստգրքերից մեզ ծանոթ էպոսը:

Ինչպե՞ս էին գրում կավե սալիկների վրա: Ստրուկները նախ հունցում էին կավը, պատրաստում սալիկներ, հետո գրագիրը բարալիկ փայտիկով սեպագիր նշաններով գրում էր կավե գրքի էջերի վրա, որից հետո դրանք շարում էին հնոցում և կրակի բոցերի մեջ



թրծում: Երբեմն այն «ծրարում էին», այսինքն՝ վրայից քսում էին կավե ավելի բարակ շերտ և կնքում: Այդպիսի «գիրքը» կամ նամակը կարող էր ապրել երկար, եթե նվաճողները չփշրեին ու չոչնչացնեին: Ասում են, Սիդոն քաղաքում Ասորեստանի թագավոր Նաբուգոդոնոսորը իր պալատը կառուցել է հենց այդպիսի կավե «նամակներից», որ ստացել է իր գահ բարձրանալու առթիվ:

Բայց կավե սալիկները գրության համար այնքան էլ հարմար չէին: Հին Հռոմում մտահղացան նոր սալիկներ, դրանք մոմի շերտով պատված տախտակներ էին, որոնց վրա գրում էին փայտե, արծաթե, պղնձե ձողիկներով: Ձողի մի ծայրը լինում էր սուր՝ գրելու, մյուսը տափակ՝ ջնջելու համար: Սրանք հարմար էին աշակերտներին գրաճանաչություն սովորեցնելու համար.— գրիր ու ջնջիր որքան կամենաս... Պապիրուս կոչվող բույսից ստացված թղթերը, որոնց հայրենիքը Հին Եգիպտոսն է, ավելի հարմար էին գրելու համար, քիչ տեղ էին գրավում, կարելի էր ոլորել և տեղափոխել ուր կամենաս: Այդպիսի պապիրուսներ հասել են մինչև մեր օրերը: Նրանցից մեկի վրա, որ պահվում է Մոսկվայի «Գեղեցիկ արվեստների թանգարանում», մեր թվականությունից առաջ 19-րդ դարում մաթեմատիկական խնդիրներ են լուծել հին եգիպտացիները: Մյուսը, որը երկու հարյուր տարով փոքր է առաջինից, ամենամեծն է իր տեսակի մեջ. սրա երկարությունը հավասար է 20 մետրի, իսկ լայնությունը՝ 30 սանտիմետր է: Սա պարունակում է թվաբանական, հանրահաշվական և երկրաչափական 80 տարբեր խնդիրներ, իրենց լուծումներով:

Այն երկրներում, որտեղ չէր աճում այդ հրաշալի բույսը, մարդիկ նախընտրեցին գրել մագաղաթի վրա, որը կոչվեց պերգամենտ, Փոքր Ասիայի Պերգամ քաղաքի անունով: Գիտնականները վկայում են, որ Պերգամ քաղաքում են առաջին անգամ ոչխարի, այծի և հորթի մորթուց ստացել այն փայլուն, ողորկ, բարակ ու նուրբ թերթերը, որոնց վրա գրել են նաև հայ պատմիչները: Մագաղաթի վրա է իր ստեղծած հայկական տառերով



digitised by A.R.A.R.@

գրել Մեսրոպ Մաշտոցը: Ուզո՞ւմ եք տեսնել մագաղաթյա ձեռագիր գրքեր, գնացեք Մատենադարան, այնտեղ սրբազան մասունքների նման պահվում են հազարավոր մագաղաթյա մատյաններ, որ գրել են հայ գրիչները վանքերի կիսախավարում, ձեթի ճրագի լույսով: Գրիչ, առաջ այսպես են կոչել ոչ թե այն գործիքը, որով այժմ գրում ենք, այլ այն մարդկանց, ովքեր բազմացնում էին այս կամ այն պատմությունը, գիրքը:

Սակայն գրքի և գրչության ասպարեզում ամենախնկական հեղափոխությունը տեղի ունեցավ թղթի հայտնաբերումից հետո: Ինչպես Միջագետքի երկրներում, այնպես էլ Հին Չինաստանում մարդիկ բազմաթիվ նյութեր են օգտագործել, մինչև որ մ. թ. ա. երկրորդ-երրորդ դարերում ստեղծեցին բամբուկե թուղթը, իսկ ապա նաև մ. թ. ա. 128 թվին՝ ժամանակակից թղթի նախատիպը: Այդ մասին պահպանվել են մի քանի լեգենդներ: Չինական պատմիչների ասելով այն հայտնագործել է ոմն Չայ Լուն, որի համար էլ դասվել է աստվածների շարքը և ի պատիվ նրա տաճարներ են կառուցվել: Ըստ մեկ այլ լեգենդի, թուղթը հնարել է Արևելյան Թուրքեստանում ապրող մի ստրուկ: Սկզբում թղթի վրա գրելու և նկարելու համար մարդիկ օգտագործել են արճիճի և արծաթի բարակ ձողիկներ, որոնց վրա հագցրել են փայտե կամ երկաթե պահպանիչ պատյաններ: Հենց այդպիսի արճիճե մատիտով է աշխատել Լեոնարդո Դա Վինչին: Իսկական մատիտը ծնվել է 1654 թվականին, երբ Անգլիայում հայտնաբերվեց գրաֆիտի հանքավայր: Գրաֆիտը՝ ալմաստի և ածուխի ազգակիցը, ավելի փափուկ նյութ լինելով, ավելի պարզ ու հստակ հետք էր թողնում թղթի վրա: Քաղաքակրթության զարգացման ընթացքում մարդը օգտվել է նաև այլ նյութերից և գրել է ինչի վրա հնարավոր է եղել և ինչով հարմար: Արձանագրություններ են արվել բրոնզի, երկաթի, ոսկու, արծաթի, ոսկորի և տերևի վրա, մակագրություններ են արվել կարծր ալմաստի, բրնձի պստլիկ հատիկի, մազի բարալիկ թելի և նույնիսկ ջրի վրա՝ քիմիական նյութեր այրելով... Այսօր էլ դեռ թուղթը այն վերջնական նյութը չէ, որի վրա մշտապես պետք է գրի մարդը: Գիտնականները փնտրում են գրելու ավելի հարմար նյութեր. այնպիսիք, որ չխունանան, չայրվեն, չոչնչանան, հազարամյակների ընթացքում միշտ կայուն լինեն խոնավության, ջերմության և ընդհանրապես տարբերի հանդեպ:



Տուն-թանգարանը բաղկացած է երկու նորակառույց սենյակներից, որը կից է վիպասանի պապենական տանը, ավելի ճիշտ, տան այն հատվածին, որտեղ ծնվել և ապրել է նա մինչև 14 տարեկան հասակը: Հիմա, իհարկե մենք չենք կարող իմանալ այդ մեկ սենյա՞կն է միայն եղել, որը հասել է մեզ, թե՞ օժանդակ այլ շինություններ էլ են ունեցել, որոնք հիմա չկան: Ինչևէ, այն, ինչ հասել է մեզ, մենք պարտավոր ենք պահպանել, այնպիսի վիճակում, որ ցուցադրելու արժանի տեսք ունենա: Հենց այս նպատակով էլ դեռ 1939 թվականին, Պերճ Պռոշյանի ծննդյան 100-ամյա հոբելյանի կապակցությամբ, Հայաստանի կառավարությունը որոշեց Աշտարակում ստեղծել նրա տուն-թանգարանը, որի հանդիսավոր բացումը տեղի է ունեցել 1948 թվականին:

Վիպասանը ծնվել է 1837 թվականին, դերձակի ընտանիքում: 1845 թվականից նա սկսել է գյուղական դպրոցում սովորել: Բայց շուտով դպրոցի տերը փակում է դպրոցը և հազիվ գրագետ դարձած պատանին դուրս է մնում: 1849 թվականին նրան ուղարկում են Մուղնի գյուղի դպրոցը և նա այստեղ սովորում է Էջմիածնից եկած աբեղա Մարտիրոս Մժեժյանի մոտ: Բայց այս դպրոցն էլ երկար կյանք չի ունենում, Մժեժյանը հանկարծ անհետանում է և փակվում է դպրոցը:

Մժեժյանի անհետացման առիթով կաթողիկոս Ներսես Աշտարակեցին զրուցում է պատանի Պռոշյանի հետ և տեսնում է, որ նա ընդունակ երեխա է: 1852 թվականին նրան ընդունել է տալիս Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը:

Մեր կենցաղը, մեր ապրելակերպն ու հասարակական կյանքն այսօր այնպես է փոխվել և շարունակում է այնպիսի արագությամբ փոփոխվել, որ դժվար է մեզ համար նույնիսկ մի երկու տասնամյակ պահպանել «հինը»: Բայց ահա Պերճ Պռոշյանի տուն-թանգարանում մենք զգում ենք վիպասանի ներկայությունը, նրա գործածած իրերի օգնությամբ, այլև հին, շատ հին Աշտարակը: Այն հին ժամանակներում կյանքը քիչ փոփոխություններ էր կրում, ամբողջ դարեր իրար նման էին: Այս թանգարանը մտնողը, եթե Պռոշյանի վեպերը մինչև անգամ չի կարդացել, կարող է հասկանալ, թե ինչի՞ մասին է գրել վիպասանը, ինչպես է գրել և, ամենակարևորը, թե նա հասարակական ինչպիսի՛ կարգերում է ապրել, ի՛նչ է տեսել և ի՛նչ է ուզում պատմել մեզ՝ իր հետնորդներին:

Պերճ Պռոշյանը գրական ասպարեզ է իջել,— ասում է մեզ նրա տուն-թանգարանը,—

digitised by A.R.A.R.@

# ՊԵՐՃ ՊՌՈՇՅԱՆԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ

1860-ական թվականների սկզբին: Նրա առաջին գրական գործը բանաստեղծություն է եղել, նվիրված Վարդան զորավարի դուստր Շուշանիկին: Իմանում ենք նաև, որ հենց այդ տարի նա կարդում է Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպը և նրա տպավորության տակ գրում է իր «Սոս և Վարդիթերը»: Պռոշյանը ծնվել է Աշտարակ գյուղում, հազիվ երկրի երեսին նշմարվող այս գետնափոր տան հերթիկի տակ: Նրա ծննդյան տարիների հին Աշտարակի տները սրա պես մի սենյականոց են եղել: Հիմա ես նստած եմ այդ ծածկի տակ և որովհետև ես էլ աշտարակցի եմ, մտաբերում եմ մանկությանս տարիները...

Այդ ե՞րբ էր, ո՞ր տարին, որ Վարդիթեր տատս, Ծաղկեվանք գնալու պատրաստություններ տեսնելիս, ասաց.

—Ա՞յ, է՞ն ա հա,— ցույց տվեց Արայի լեռը, որն իրենց պատշգամբից պարզ երևում էր,— սարի պատռվածքի մեջ մի վանք կա, որ կոչվում է Ծաղկեվանք: Քիչ էն կողմումն էլ Սևանա ծովն է, որդի՛, Սևանա կղզին, ճգնավորների տեղը: Արամիս հայրը շատ էր սիրում Սևանը, միշտ գնում, հասնում էր էնտեղ՝ իշխան ձուկ, կողակ բերելու: Տասը-տասնհինգ տարեկան աղջիկ էի, մերս պատմեց, թե մի անգամ Ճաննապանենց Սերգոյի պապը քնից արթնացնում է իր տղաներից մեկին. «Վեր կաց,— ասում է,— լիսը բացվելու վրա է, էշը թամքել եմ, քթոցները կապել: Նստի գնա, Սևանա ծովը կողակ բեր»:— Էս տղան վեր ա թռչում տեղիցը, քունը գլխին նստում ա էշը և քշում դեպի Սևանա ծովը: «Զարթնի, էդ ի՞նչ ես անում, որդի,— ձեն ա տալիս պապը,— մի երե՛սդ լվա, աչքե՛րդ բաց արա, թե չէ ըտենց քունդ գլխիդ կեթաս, չես իմանա, ծովը կընկնես, կխեղդվես»:— Է, տղան լսո՞ւմ է որ: Լսում չի, էշը քշում, գնում հասնում ա Սևան, ընկնում ա ծովը, համ ինքն ա խեղդվում, համ էշը: Բա՛, որդի, Սևանը մեծ ծով ա, տուտն ու տակը չի երևում:

Այդ օրը Վարդիթեր տատիկից լսեցի նաև մի այլ ավանդություն. Ամառները, Ծաղկեվանքի շուրջը,— ասաց նա,— ապրելիս են եղե քոչվոր մարդիկ, միամիտ, բարի: Մի օր մի գեղեցիկ, սիրուն աղջիկ եկել է, հաստատվել էդ տեղերում, այնքան սիրուն, որ տեսնողները տեղում քարացել, մնացել են. մազիս համբարքով մեկ ջահել-ջիվան տղերք են քար դառել: Մի անգամ էլ մի հովիվ իր ոչխարների հոտը քշել, եկել Ծաղկեվանք է հասել: Ոչխարները բարձրացել են սարը, հովիվն ու շներն էլ՝ հետները: Իրիկնադեմին, երբ ուզեցել են իջնել սարից, հանկարծ տեսել են հըրաշք աղջկանը և էնպես են զարմացել ու հիացել նրա գեղեցկությամբ, որ լեզուները կպել է, և բոլորն էլ տեղնուտեղը քար են կտրել ու մնացել սարի վրա: Հիմա էլ, որդի, որ գնաս, բարձրանաս սարը, աչքովդ կտեսնես քարացած ոչխարներին, շներին և հովվին: Ասում են, որ էտ աղջիկը հազար տարին մի անգամ է երևում Ծաղկեվանքում և ով նրան պատահեց էտ օրը՝ քար կդառնա:

Ես բերանս բաց, վախեցած լսում էի Վարդիթեր տատիկի պատմությունները, և չգիտեի, որ Վարդիթեր տատը Պերճ Պռոշյանի «Սոս և Վարդիթեր» գործի հերոսուհու նախատիպն է: Այն ժամանակ ես մեկ-երկու անգամ տեսել էի «Սոս և Վարդիթեր» ներկայացումը Աշտարակի բեմում, տեղական դերասանների կատարմամբ, բայց ոչինչ չէի հասկացել: Ես ամեն օր կարող էի լինել Վարդիթեր տատիկի մոտ, լսել նրա պատմությունները, բայց ի՞նչ իմանայի, թե այդ պետք կգար ինձ երբևիցե: Վարդիթերը ծերացած էր արդեն, բայց շատ գեղեցիկ կին էր, նրա այտերը նմանեցնում էի նոր թխած գաթայի: Մեզ մոտ՝ Աշտարակում, երբ գաթա էին թխում մեր տատերը, գաթի երեսին ձվի դեղնուց էին քսում և գաթի ծաղիկ էին շաղ տալիս, գաթեն շատ գեղեցիկ տեսք էր ստանում: Այդքան գեղեցիկ և գրավիչ էին Վարդիթեր տատիկի կարմիր այտերը: Ծովի նման պարզ, մեծ աչքեր ուներ, փոքրիկ բերան, փափուկ, տաք ձեռքեր և վրայից դարչինի ու մեխակի հոտ էր գալիս:

Պռոշյանի տուն-թանգարանում կա մի հուզիչ լուսանկար: Պռոշյանը մեզ է թողել Վարդիթերի լուսանկարը, որը լուսանկարել է ինքը իր լուսանկարչական ապարատով, Վարդիթերի դեռևս միջին տարիքի հասակում: Պետք է որ վիպասանը հիացած լինի գյուղական այս աղջկա գեղեցկությամբ:

Այս տուն-թանգարանն այցելելուց հետո, Աշտարակում ամեն մի քար, ամեն մի կիսավեր ու կանգուն հին տուն նայողի համար դառնում է հնության մասունք:

**ՎԱՂՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ**



digitised by A.R.A.R.@



Այս համարից պարբերաբար կտպագրենք հոդվածաշար, որտեղ կշոշափվեն կենցաղում ձեզ հանդիպող բազմաթիվ երևույթներ, որոնց բացատրությունները դուք չեք գտնի և ոչ մի հանրագիտարանում:

Ձեր հարցերին, եթե ունենաք, կպատասխանեն գիտության և մշակույթի գործիչներ, գրողներ, մանկավարժներ և, իհարկե, եթե կարող եք, նաև... դուք:

Հարցերն ուղարկեցեք «Պիոների» խմբագրություն՝ ֆիզիկոս Արտակ Ոսկանյանին, որը վարում է այս բաժինը:

# ՓԵՏՈՒՐԸ ՓԱՅՏԻՑ ՓԱՓՈՒԿ ՉԷ

Ինչո՞ւ է բարձը փափուկ: Ինչո՞ւ ավելի հարմար է պառկել փետրանեբքնակի կամ փչովի ներքնակի վրա, քան տախտակների կամ պինդ գետնի վրա:

Եթե դուք ասեք, որ բմբուլն ու օդը պարզապես փափուկ են, իսկ տախտակներն ու գետինը՝ կոշտ, ապա դա այնքան էլ ճիշտ չի լինի: Բանն այստեղ նյութի հատկության մեջ չէ. և՛ տախտակները, և՛ պինդ կավը կարող են «փափուկ» լինել: Պինդ նյութերից ևս կարելի է հարմարավետ «մահիճ» պատրաստել՝ դրան մարդու մարմնի ձև տալով:

Պատկերացրեք, որ դուք պառկել եք փափուկ կավի վրա: Վեր կենալուց հետո, կավի վրա կմնա ձեր մարմնի ձևին համապատասխան մի փոս: Չորանալով՝ կավը քարի պես կպնդանա: Եթե դուք պառկեք այդ փոսի մեջ, ապա անհարմարություն չեք զգա, չնայած որ ձեր «մահիճը» ոչ մի կերպ փափուկ չես կոչի (ճիշտ է, չորանալուց փոսի չափերը մի փոքր կըփոխվեն, բայց մենք դա կարող ենք անտեսել):

Հետևաբար փափկության կամ կոշտության մասին տպավորություն ստանալը կախված է ոչ թե նյութի հատկությունից, այլ մարմնի մակերևույթին եղած ճնշման մեծությունից: Կատարենք մի ոչ մեծ հաշվարկ:

Ենթադրենք հասուն մարդու զանգվածը մոտավորապես 60 կգ է, իսկ մարմնի մակերևույթի մակերեսը՝ համարյա 2 $սմ^2$: Երբ մարդը պառկած է անկողնում, որը ճկվում է և ասես «ընդգրկում» մարմինը.



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

պա անկողնում հպվում է նրա մարմնի ամբողջ մակերևույթի մոտավորապես քառորդ մասը:

Դժվար չէ հաշվել (հաշվեք ինքներդ և կհամոզվեք), որ այդ դեպքում մարմնի մակերևույթի մեկ քառակուսի սանտիմետրի վրա ազդում է ընդամենը 12 գ ուժ: Իսկ եթե նույն մարդը պառկի պինդ, ոչ առաձգական մակերևույթի վրա, ապա հպման մակերեսը կլինի մոտավորապես հարյուր քառակուսի սանտիմետր: Այդ դեպքում մեկ քառակուսի սանտիմետրի վրա կազդի արդեն 600 գ ուժ, այսինքն ճնշումը կմեծանա 50 անգամ:

## ՍԱՌՆԱՐԱՆՈՒՄ ՄԹԵՐՔՆԵՐՆ ԱՎԵԼԻ ԱՐԱԳ ԵՆ ՉՈՐԱՆՈՒՄ

Սկսենք ձեզ հայտնի երկու փաստից.

1) Սառը օդն ավելի ծանր է տաքից (հիշեցեք, խնդրեմ, թե ինչու):

2) Ինչքան օդը տաք է, այնքան ավելի մեծ քանակությամբ ջրի գոլորշի կարող է պարունակել:

Օդը շփվում է բաց ջրամբարների հետ: Ցանկացած ջերմաստիճանի դեպքում ջրում կլինեն մոլեկուլներ, որոնք կկարողանան դուրս թռչել ջրի մակերևույթից և կազմել ջրային գոլորշի: Գոլորշիացման պրոցեսին զուգընթաց առկա է նաև մոլեկուլների հետադարձ անցումը գոլորշուց հեղուկին (խտացում): Պարզ է, որ որքան մեծ լինի գոլորշու խտությունն, այնքան ավելի արագ կընթանա խտացման պրոցեսը: Եթե ջրի գոլորշիացումը տեղի է ունենում սահմանափակ ծավալում (օրինակ՝ փակ անոթում), ապա անպայման կգա մի պահ, երբ հեղուկը լքող մոլեկուլների թիվը կհավասարվի ետ վերադարձող մոլեկուլների թվին: Այդ դեպքում ասում են, որ հեղուկի և գոլորշու միջև հավասարակշռություն է հաստատվել (հեղուկի և գոլորշու քանակն այլևս չի փոխվում): Այդ վիճակում գտնվող գոլորշին անվանում են հագեցած, այդ անվամբ ընդգծելով, որ անփոփոխ պայմանների դեպքում հետագա գոլորշիացումն արդեն անհնար է:

Պարզ է. որքան բարձր է ջերմաստիճանը, այնքան ջուրն ավելի ինտենսիվ է գոլորշիանում և, հետևաբար, այնքան ավելի մեծ պետք է լինի ջրային գոլորշու խտությունը, որպեսզի հավասարակշռություն հաստատվի: Այլ կերպ ասած, որքան բարձր է ջերմաստիճանը, այնքան ավելի շատ ջրային գոլորշի կարող է պարունակել տվյալ ծավալում գտնվող օդը: Օրինակ՝ 20°C-ի դեպքում 12 $մ^2$ մակերեսով և 8 մ բարձրությամբ սենյակում գոլորշու ձևով կարող է լինել մոտավորապես 600 գ ջուր, իսկ 100° C-ի դեպքում՝ մոտ 20 կգ:

Օդի խոնավության աստիճանը (օդի պարունակած այս կամ այն քանակությամբ ջրային գոլորշիները) սովորաբար բնութագրում են հատուկ ֆիզիկական մեծության՝ հարաբերական խոնավության միջոցով: Օդի հարաբերական խոնավություն է կոչվում 1 $մ^3$ օդում եղած ջրի գոլորշու զանգվածի հարաբերությունը գոլորշու այն առավելագույն զանգվածին, որը կարող է պարունակվել նույն ծավալում տվյալ ջերմաստիճանի դեպքում: Այդ հարաբերությունն ընդունված է արտահայտել տոկոսներով: Եթե ջրային գոլորշու քանակը օդում չի փոխվում, օդի ջերմաստիճանն էլ չի բարձրանում, ապա հարաբերական խոնավությունը կփոքրանա: Եվ ընդհակառակը. օդը սառելու դեպքում նրա հարաբերական խոնավությունը փոքրանում է: Հենց որ այն հավասարվում է 100 %-ի, ջրային գոլորշիներն սկսում են խտանալ, «ավելորդ» գոլորշին սկսում է փոխարկվել ցողի կամ եղյամի:

Այժմ տեսնենք, թե ինչպես է օդն իրեն պահում սառնարանում: Բոլոր սառնարանների սառցախցիկը վերևի մասում է տեղադրված: Խցիկի մոտից սառը օդն իջնում է ներքև: Շփվելով սառնարանի պատերի և մթերքների հետ՝ այն տաքանում է: Այդ ժամանակ նրա հարաբերա-





digitised by A.R.A.R.@

կան խոնավությունը փոքրանում է, իսկ ջուր պարունակելու ունակությունը՝ մեծանում: Տաքանալով և իր մեջ վերցնելով մթերքների մեջ եղած ջրի մի մասը՝ օդը նորից բարձրանում է դեպի սառցախցիկ: Այստեղ այն սառում է մինչև սկզբնական ջերմաստիճանը, բայց ավելի խոնավ է լինում սկզբնականից (մթերքներից վերցրած ջրի հաշվին): Մի քանի ցիկլ կատարելուց հետո օդի խոնավությունն այնքան է աճում, որ, մոտենալով սառցախցիկին, այն ստիպված է լինում ջրի մի մասը թողնել խցիկի վրա «նստվածքի» ձևով՝ ջրի կաթիլների կամ սառցաբյուրեղիկների տեսքով:

Այդպես՝ օդի օգնությամբ, ջուրը «տեղափոխվում» է ավելի տաք մարմիններից դեպի ավելի սառը մարմինը՝ մթերքներից դեպի սառցախցիկը: Ընդ որում այդ ժամանակ տեղի է ունենում ջերմության շատ արդյունավետ տեղափոխում. գոլորշիացման ժամանակ մթերքներից խլվում է ջերմության որոշակի քանակ և հաղորդվում օդին, իսկ խտացման ժամանակ այն խլվում է օդից և հաղորդվում սառցախցիկին: Իհարկե, ջուրն ավելի հեշտ կխլվի առավել տաք մարմիններից: Օրինակ՝ $0^{0}C$ ջերմաստիճանի 1գ ջուրր գոլորշիացնելու համար պահանջվում է $2,59.10^{3}$ Ջ ջերմության քանակ, իսկ $50^{0}$ C-ում՝ $2,88.10^{3}$ Ջ (հենց այդքան էլ ջերմություն անջատվում է խտացման ժամանակ):

Բնականաբար, հարց է ծագում. իսկ ինչպե՞ս են սառում «չոր» առարկաները: Չէ՞ որ այդ դեպքում ջրի և դրա հետ կապված էներգիայի տեղափոխություն չի լինի: Դա իսկապես այդպես է: Բայց կա էներգիայի տեղափոխման ևս մի պրոցես, կապված շրջանառություն կատարող օդի սառելու և տաքանալու հետ: Ճիշտ է, «չոր» մթերքները սառում են շատ ավելի դանդաղ, քան «խոնավները»:

**Իսկ այժմ փորձեք ինքնուրույն պատասխանել այսպիսի հարցերի.**

**1) Սառնամանիքին արտաշնչելիս առաջանում են մշուշ և եղյամ: Ինչո՞ւ:**

**2. Ինչո՞ւ սառնամանիքին տուն մտնելիս ակնոցները «քրտնում» են: Ինչո՞ւ են ակնոցները «քրտնում» սառնամանիքին:**

**Ինչու՞ լոգարանում սովորաբար ջուր է կաթում առաստաղից և սառը խողովակներից, իսկ տաք ջրի խողովակները չոր են մնում:**

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● Սովետական արվեստագետների խընդրանքով մեր երկրում բացվել էր ճապոնական տիկնիկների ցուցահանդես, որի ցուցանմուշներից 500 նվիրվեց Արևելքի ժողովուրդների արվեստի մեր երկրի պետական թանգարանին: Ինչպիսի տիկնիկներ ասես, որ չկային այնտեղ: Ճապոնիայում այդ տիկնիկները ցուցադրվում և վաճառվում են Աղջիկների օրը: Այդ պատճառով պատվանդանի յուրաքանչյուր աստիճանին միշտ դրված են լինում դեղձենու ծաղիկներ, որ ամուսնական երջանկության խորհրդանիշ է համարվում:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

**Իսկ Տղաների օրը Ճապոնիայում տոնում են մայիսի 5-ին, յուրաքանչյուր**



digitised by A.R.A.R.@

տան վրա, որտեղ տղա է ապրում փայտե ձողին ամրացնում են կտորից կամ գունավոր թղթից պատրաստված ծածանի պատկեր, որովհետև ծածանը այն սակավաթիվ ձկներից է, որ լողում է հոսանքին հակառակ, իսկ դա արիության, եռանդի, քաջության խորհրդանիշ է։

● Ըստ ավանդության, հույն փիլիսոփա Դիոգենեսը ապրում էր տակառում։ Մի անգամ Դիոգենեսին հարցրին.

— Իսկ ի՞նչ կանես, եթե տակառը կոտրվի։

— Դա ինձ չի անհանգստացնում,— պատասխանեց իմաստունը,— իմ տեղը պատմության մեջ է։

● Դանիացի ֆիզիկոս Նիլս Բորը պատերազմի ժամանակ հրաժարվեց համագործակցել գերմանացիների հետ, որոնք գրավել էին նաև իր հայրենիքը։ Հաշվի առնելով գիտնականի հատուկ նշանակությունը, դաշնակիցները ինքնաթիռ ուղարկեցին, որը գաղտնի Անգլիա հասցրեց Բորին։

Օդաչուին զգուշացրել էին, որ նա շատ կարևոր «բեռ» է տեղափոխում։ Եվ որքան մեծ եղավ Բորի զարմանքը, երբ վայրէջքից հետո օդաչուն ծիծաղելով նրան ցույց տվեց տիպային հրահանգը «Շա՛տ կարևոր բեռներ տեղափոխելու մասին»։ Այնտեղ մասնավորապես ասվում էր. որ «Հակառակորդի հարձակման դեպքում բեռը պետք է նետել ծովը»։

● 1743 թվականին Մ. Լոմոնոսովին, իր հակառակորդի հետ ունեցած հերթական ընդհարումներից հետո, տնային կալանքի ենթարկեցին։ Ձմեռ էր, սենյակում, որտեղ նրան փակել էին, ցուրտ էր։ Բայց գիտնականը շարունակում էր աշխատել։

Կալանքից ազատվելուց հետո նա ակադեմիա ներկայացրեց իր նոր ուսումնասիրությունը՝ «Ջերմության և ցրտի մասին»։

● Որոշ մարզաձևեր այնքան էլ հին պատմություն չունեն, օրինակ՝ թենիս առաջին անգամ խաղացել են 1874 թվականին՝ Անգլիայում, իսկ սեղանի թենիս՝ քիչ ավելի ուշ՝ 1880-ական թվականներին։ Այդ տարիներին են Կանադայում առաջին անգամ տեղի ունեցել հոկեյի, իսկ 1891 թ. Ամերիկայի Սփրինգֆիլդ քաղաքում՝ բասկետբոլի մրցումներ։

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## ՀՈՂԸ

Սերմի պայթյունը
Լոկ հողն է լսում,
Դղիրդ է լինում...
Բայց մեզ չի հասնում։

Հողն իր սրտին է
Առնում դղիրդը...
Ու մեզ ուղարկում
Ծիլն ու ծաղիկը։

Հողը տանող է,
Սիրտ ունի անծայր...
Դրանից է, որ
Նա կոչվում է մայր։

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՋՕՂԼՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

## ՄԱՔԵՆՈՑԱՑ ՎԱՆՔ

Հայաստանում վանական համալիրները սկսել են ձևավորվել 9-րդ դարում, իսկ մինչ այդ կառուցում էին առանձին կանգնած եկեղեցիներ: 11—12-րդ դարերում ձևավորվեցին սեղանատունը, գավիթը, զանգակատունը, գրատունը և այլն:

Մեծ վերելք ապրեց խաչքարերի արվեստը: Սրանք կանգնեցվում էին համատարած՝ գերեզմանների վրա, տարած հաղթանակների համար, մարդու հիշատակի համար և այլն: Իսկ մինչև 9-րդ դարը խաչքար կանգնեցվում էր միայն ընտրյալների գերեզմաններին, հավատադարձության, այսինքն հեթանոսությունից քրիստոնեության անցնելու համար պայքարած նշանավոր մարդկանց գերեզմաններին:

9-րդ դարի հայկական եկեղեցիները մոնումենտալ են, պարզ հարդարված և մեծածավալ: Սրանց դասական օրինակներից է Վարդենիսի շրջանի Ձիչակլու գյուղի Մաքենոցաց վանքի գլխավոր եկեղեցին: Սև քարից շինված, այժմ կիսավեր այս եկեղեցին չի կորցրել իր առնական տեսքը:

Եկեղեցու դիրքը շատ գրավիչ է, մի հանգամանք, որ բնորոշ է մեր ճարտարապետությանն առհասարակ: Արևմուտքից եկեղեցին հուսալիորեն պաշտպանված է ձորով, իսկ մյուս կողմերից պարսպապատ է: Եկեղեցու շինարարության ավարտից մոտ 3 հարյուրամյակ անց,



digitised by A.R.A.R.@

արևմտյան պատին կից կառուցվում է գավիթը, որից միայն ավերակներ են մնացել: Եկեղեցու մուտքի երկու կողմերում ձվաձև խաչքարեր են դրված պատի շարվածքի մեջ: Այդ խաչքարերն այնքան պարզ են հարդարված, որ կասկած չի կարող լինել, թե ավելի ուշ դարերում են ստեղծվել: Խաչքարերի հայտնի օրինակներում միայն խաչը չէ, որ կրում է գեղագիտական արտահայտչականության մենաշնորհը:

Բոլոր կողմերից խաչքարը ծածկվում է բուսական կամ երկրաչափական բավական ակտիվ զարդանախշերով, որոնք ընդհուպ մոտենում են խաչին: Բոլորովին այլ են Մաքենոցաց վանքի խաչքարերը: Դրանք գլխավոր եկեղեցու նման պարզ են ու անպաճույճ:

Ամեն մի արվեստի ստեղծագործություն ծնվում է բանականությամբ և ոգով: Այս օրենքը հավասարապես վերաբերում է բոլոր արվեստներին: Իսկ եթե տարրերից որևէ մեկը բացակայում է, ապա արվեստի ստեղծագործությունը կատարյալ չէ:

Մենք հաճախ ենք հանդիպում այդպիսի օրինակների: Բազմաթիվ շենքեր կան, որոնք կառուցված են շինարարական տեխնիկայի բոլոր օրենքներով: Շինարարական տեխնիկայի, բայց ոչ շինարարական արվեստի: Անհոգի այդ շենքերն օտարացնում են մարդուն իր շրջապատից: Ահա թե ինչու արտաքին միջավայրի հետ ներդաշնակության որոնումները մարդուն տանում են վայրի բնության կամ էլ արհեստականորեն ստեղծված միկրոմիջավայր՝ հարմարավետ բնակարան:

Որքան հաճախ ենք մենք լսում անհոգի կամ անբնական երգեր: Այդ երգերը ոչ մի զգացմունք չեն արթնացնում մեր հոգիներում:

Համերգներից մեկի ժամանակ ամերիկյան ժողովրդական երգերի հայտնի կատարող ու պրոպագանդող Պիտ Սիգերն ասել է. «Դուք հիանում եք մեր ժողովրդական երգերով, շրջվեք դեպի ձեր ժողովրդական երգերը և դուք կտեսնեք, որ դրանք նույնքան հիասքանչ են»: Ահա թե ինչու են մեզ դուր գալիս ազգային երգերը: Դրանք ստեղծվել են ոգով և բանականությամբ:

Մաքենոցաց վանքի խաչքարերն այդպիսին են: Այդպիսին է նաև Մաքենոցաց վանքի գլխավոր եկեղեցին:

Վանքի դիմաց, ձորի մյուս ափին հիմա ցորենի արտ է: Ոսկեգույն հասկերի ետևից երևում է հոյակերտ Մաքենոցաց վանքը և գրեթե գլխավոր եկեղեցու բարձրության դարավոր վիթխարի ծառերը: Այնտեղ մի կետ կա, որտեղից կարելի է տեսնել հեռվում ծփացող Սևանա լիճը:

Ի՞նչ է եղել այս արտի տեղը 1000 տարի առաջ, գուցե բնակավա՞յր կամ գուցե ոչինչ էլ չի եղել, պարզապես քարաստան, իսկ գուցե այն հեռավոր ժամանակներում էլ արտ է եղել:

Հիմա արտ է, ցորենի ծփացող արտ...

ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ
ճարտարապետ



(Տևել է հունվարի 8-ից փետրվարի 6-ը)

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Հայոց տոմարի 6-րդ ամիսն է: Վանական Վարդապետը գտնում է, որ Արաց անունը ծագել է արանց գոյականից, որը գրաբար նշանակում է «տղամարդկանց»: Միջնադարի մեծ իմաստասերը այնուհետև բերում է մի ավանդություն, ըստ որի ձմռան այդ ամսին մեր երկրում լեռնային ձյունոտ ճամփաները այնքան վտանգավոր են եղել, այնպիսի բուք ու բորաններ են եղել, որ «ասում են արանց (տղամարդկանց) ճանապարհ է, այլ ոչ թե թույլերի: Այստեղից էլ այդ ամսվա անունը դրել են Արանց»: Այս ամիսը Արանց է անվանում նաև Հովհաննես Իմաստասերը:

Ռ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ



digitised by A.R.A.R.@




Մի հնարամիտ վաճառական ուներ երկու նժարանոց կշեռք և ընդամենը չորս կշռաքար, բայց դրանցով կարողանում էր կշռել մեկից մինչև քառասուն կիլոգրամ: Իսկ նրա գործընկերը ուներ հինգ կշռաքար և կարողանում էր կշռել մեկից մինչև 121 կգ: Վաճառականներից յուրաքանչյուրը ի՞նչ կշռաքարեր էր օգտագործում:

● Հովիվը ամեն երեկո հաշվում էր իր հոտը: Նա գիտեր, որ բոլոր այծերն ու ոչխարները միասին ունեն 132 գլուխ և 18 պոզ: Քանի՞ ոչխար և այծ ուներ հովիվը:

**«ՊԻՈՆԵՐ» № 5-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ**

1. Ոչ մի տերև: Եղևնու վրա տերև չի աճում:
2. Չորս եղբայր և երեք քույր: Յուրաքանչյուր եղբայր ունի երեք եղբայր և երեք քույր, և յուրաքանչյուր քույր ունի չորս եղբայր և երկու քույր:




Հայրը մահից առաջ կանչում է իր երեք տղաներին և պատվիրում, որ իր մահից հետո իրենց ունեցած 19 ձիերը բաժանեն եղբայրների մեջ այնպես, որ մեծ տղան ստանա ձիերի կեսը, միջնեկ տղան մեկ քառորդը, իսկ փոքրը մեկ հինգերորդը: Երբ հայրը մահանում է, եղբայրները գլուխ են կոտրում, բայց չեն կարողանում խնդիրը լուծել: Հանկարծ իրենց տուն հյուր է գալիս մի ձիավոր: Լսելով տղաների վեճը, նա իսկույն կատարում է ձիերի բաժանումը այնպես, ինչպես պատվիրել էր հայրը: Ինչպե՞ս բաժանեց:

Հանձնված է տպագրության 13.03.1984 թ.: Ստորագրված է տպագրության 22.05.1984 թ.: ՎՖ 04615: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 64032: Պատ. 996: Գինը՝ 15 կ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 13.3.1984 г. Подписано к печати 22.5.1984. Формат 70×100 1/16. ВФ 04615. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64032. Заказ 996. Цена 15 коп. Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

digitised by A.R.A.R.@

Լուսանկարը՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։

Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

digitised by A.R.A.R.@

ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)
Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, տեխ. խմբագիր՝ Ճ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@